Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23 (101)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 23 (101)





«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

# ՍԵՐԳԵՅ ՄԻՐՈՆՈՎԻՉ ԿԻՐՈՎԻ ԱՆՄԱՀ ՀԻՇԱՏԱԿԻՆ

Վեց տարի սրանից առաջ, 1934 թվի դեկտեմբերի մեկին դադարեց բաբախելուց բոլշևիկների պարտիայի ու սովետական ժողովուրդների ամենասիրելի ղեկավարներից ու ամենահավատարիմ զավակներից մեկի, ռևոլյուցիայի բոցաշունչ տրիբունի՝ Սերգեյ Միրոնովիչ Կիրովի սիրտը։

Սերգեյ Միրոնովիչ Կիրովի հերոսական ու անման կյանքի թելը կտրվեց ՍՍՌՄ ժողովուրդների ամենաոխերիմ թշնամիների՝ տրոցկիստական-բուխարինական նենգ ու գազազած շների դաժան գնդակից։ Միջազգային իմպերիալիզմը և նրա վարձկանները ցանկանում էին վերականգնել մեր երկրում կապիտալիզմը։ Կատաղած թշնամին ամեն միջոց գործ էր դնում խլելու ժողովրդից նրա



սիրելի առաջնորդներին։ Առաջին գնդակը նա արձակեց ընկ. Կիրովի վրա։

Մեծ էր սովետական ժողովրդի զայրույթն ու ատելությունը իր հայրենիքի այդ նողկալի դավաճանների հանդեպ։ Անհուն էր նրա վիշտը։

«Ընկեր Կիրովի՝ ողջ պարտիայի ու ՍՍՌՄ ողջ բանվոր դասակարգի կողմից սիրված, բյուրեղային-մաքուր, անհողդողդ ու տոկուն, պարտիական-բոլշևիկ, լենինյան տրիբունը, որ իր ամբողջ գունազեղ, փառապանծ կյանքը տվել էր բանվոր դասակարգի գործին, կոմունիզմի գործին,— վերջին տարիներում ամենածանր կորուստն է ամբողջ պարտիայի և սովետական երկրի համար» (1934 թ. դեկտեմբերի 2-ի ՀամԿ(բ)Պ Կենտկոմի հաղորդագրությունից)։

Ի պատասխան թշնամու այդ ստոր ոտնձգության ՍՍՌՄ ժողովուրդներն էլ ավելի սերտորեն համախմբվեցին բոլշևիկների մեծ պարտիայի շուրջը, սիրելի Ստալինի շուրջը, զզվանքով ու ռևոլյուցիոն դաժանությամբ ճզմելով գարշելի այդ մարդասպանների օձաբները, որոնք փորձում էին հետ շրջել պատմության անիվը դեպի հինը, դեպի ստրկությունը։

Սակայն ժողովրդի այդ երդվյալ թշնամի-

ները չհաջողվեց միայն Սերգեյ Միրոնովիչի, սովետական ժողովրդներին այնքան թանկագին կյանքը խլելով: Դա նրանց սև գործի միայն սկիզբն էր: Զինովև-բուխարինյան ոհմակի այդ արյունարբու գայլերը ՍՍՌՄ բանվոր դասակարգից խլեցին նաև Վալերիան Կույբիշևին, Մաքսիմ Գորկուն, նրա այդ փառապանծ զավակներին: Դեռ նրանք ծրագրել էին ավելի ահավոր կորուստներ հասցնել ՍՍՌՄ ժողովրդներին: Սակայն այդ նրանց չհաջողվեց: Սովետական ժողովրդի արթուն աչքը նկատեց այդ և 1937—38 թ. թ. անտիսովետական բլոկների դատական պրոցեսներում նրանք ամբողջապես մերկացվեցին ու բանվոր դասակարգի հզոր զենքը ամենայն դաժանությամբ ջախջախեց նրանց:

«Ընկեր Կիրովն իրենից ներկայացնում էր բոլշևիկի այն տիպարը, որը չէր վախենում դժվարություններից, պարտիայի առաջադրած մեծ նպատակներին հասնելու համար»— գրել էին Ստալինը, Մոլոտովը, Սերգեյ Միրոնովիչի մտերիմները և ընկերները 1934 թ. դեկտեմբերի 2-ին («Սովետական Հայաստան» 1934 թ. դեկտ. 2):

Սերգեյ Միրոնովիչը Լենինի-Ստալինի պարտիայի, կոմունիզմի մեծ գործի հավատարիմ զավակն էր, որը կոփված էր բոլ-



շևիկյան պողպատից և դաստիարակված էր աշխատանքի ստալինյան ոճով: Նա ռևոլյուցիայի բոցաշունչ ասպետն էր ու ժողովրդական տրիբունը, որը հանուն սոցիալիզմի հաղթանակների և սոցիալիզմի բոլոր թշնամիների դեմ մղած իր համառ ու հաղթական պայքարում միշտ բարձր ու անաղարտ էր պահել լենինյան-ստալինյան պարտիայի մեծ դրոշը, պարտիայի անբասիր անունը: Սերգեյ Միրոնովիչը բոլշևիկյան պարտիայի հենց այն անձնվեր մարտիկներից էր, որոնց մասին ընկ. Ստալինը 1937 թ. դեկտեմբերի 11-ի Մոսկվա քաղաքի ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում ասել է, որ անհրաժեշտ է՝

«Որպեսզի նրանք լինեն նույնպիսի պարզ ու որոշակի գործիչներ, ինչպես Լենինը, որպեսզի նրանք մարտում լինեն նույնպիսի անվախներ և անողոքներ դեպի ժողովրդի թշնամիները, ինչպիսին Լենինը...»:

Սերգեյ Միրոնովիչը միշտ էլ և ամենուրեք եղել է պարզ ու որոշակի գործիչ, ինչպես Լենինը, ինչպես Ստալինը, նա միշտ էլ անվախ և քաջարի է եղել մարտում, ինչպես Լենինը, ինչպես Ստալինը: Եվ՝ «Ամենուրեք, ամենադժվարին ճակատամա-

մերում, ուր ընկեր Կիրովին ուղարկում էին պարտիան ու Կենտրոնական Կոմիտեն, նա պատվով, ինչպես իսկական բոլշևիկ-ղեկավար, կատարում էր պարտիայի հանձնարարած գործը» (ԺԴԱՆՈՎ)։



Սերգեյ Միրոնովիչ Կիրովը (Սերյոժա Կոստրիկովը) ծնվել է 1886 թ. մարտի 27 (15)-ին, ցարական Ռուսաստանի նախկին Վյատկա նահանգի փոքրիկ ու հեռընկած Ուրժում քաղաքում։ Կիրովի հայրը՝ Միրոն Իվանովիչ Կոստրիկովը, սկզբում անտառապահ էր, սակայն դաժան կարիքի պահանջներից ստիպված, հետագայում թողնում է ընտանիքը և ուղեվորվում Ուրալ՝ աշխատանք փնտրելու, որտեղ և անհետ կորչում է։

Չորս տարեկան Սերյոժան և երկու քույրերը մնում են մոր՝ Եկատերինա Կուզմինիչնայի խնամքին, որը լվացարարությամբ, ուրիշների համար շոր կարելով, հազիվ էր ընտանիքի օրեկան չոր հացը հայթայթում։ 1894 թ., կարիքից ստիպված՝ Սերյոժային հանձնում են Ուրժումի որբանոցը։ Սերյոժան որբանոցի եկեղեցական-ծխական դպրոցն ավարտելուց հետո, 1901 թ. ավար-



տում է Ուրժումի քաղաքային ուսումնարանը, իսկ 1904 թ. Կազանի մեխանիկական-տեխնիկական ուսումնարանը։

Դեռ մանուկ հասակից, Սերգեյ Միրոնովիչ Կիրովը սերտ կապ է հաստատում Ուրժումի քաղաքական աքսորյալների հետ, Կազանի ռեվոլյուցիոն խմբակների հետ և ակտիվ կերպով մասնակցում է ուսանողական ռեվոլյուցիոն շարժումներին։ 1904 թ. աշնանը 18 տարեկան հասակում Սերգեյ Միրոնովիչը մտնում է Տոմսկ քաղաքի սոցիալ դեմոկրատական խմբակի մեջ։

Լինելով 1905 թ. առաջին ռուսական ռեվոլյուցիայի ակտիվ մասնակիցներից ու ղեկավարներից մեկը, նա կազմակերպում է զինված դիմադրություն սև-հարյուրակային բանդիտներին, որոնք ջարդեր ու ավերներ էին սփռում ամենուրեք և որի համար նրան 1905 թվին Տոմսկում ձերբակալում են։ Տոմսկի բանտից դուրս է գալիս 1908 թվին և ուղևորվում է սկզբում Իրկուտսկ, ապա Հյուսիսային Կովկաս։

Անցնելով ցարական դաժանագույն ռեժիմի՝ զրկանքների, բանտերի միջով, կոփվելով բանվոր դասակարգի պայքարի ամենաթեժ բովում, Սերգեյ Միրոնովիչը դառնում է Լենինի-Ստալինի պարտիայի ակ-

նավոր գործիչ և պրոլետարական հմուտ ղեկավար։

1917 թ. Սերգեյ Միրոնովիչ Կիրովը Վլադիկավկազում է։ Աշխատանքի և պայքարի դժվարագույն պայմաններում բացատրելով միտինգներում, ժողովներում, ելույթներում, տեղական «Թերեք» թերթում, չեչեն, ինգուշ, օսեթին ժողովուրդներին փետրվարյան ռեվոլյուցիայի բուրժուական բնույթը, նա կարողանում է ոտքի հանել նրանց, որի հետևանքով շուտով իշխանությունն անցնում է բոլշևիկների ձեռքը։ Այնտեղ նա ընտրվում է սովետների համառուսական երկրորդ համագումարի դելեգատ և մեկնում է Պետերբուրգ, որտեղ ակտիվ կերպով մասնակցում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի համար մղվող մարտերին։

1918 թ. հոկտեմբերին Կիրովը գալիս է Աստրախան, որտեղ սպառնում էին միանալ Կոլչակի և Դենիկինի սպիտակ-բանդիտական զորքերը։ Դավաճան Տրոցկին հրամայել էր դատարկել Աստրախանը։ Լենինը լավ գիտակցելով, որ Աստրախանը Կասպից ծովի բանալին է, կոչ արեց. «Աստրախանը պաշտպանել մինչև վերջը»։

Կիրովը թշնամական դավադրությունների,



դավաճան Տրոցկու որոգայթների, դենիկինյան բանդայի օրհասական ավերների և պարենի ու զինամթերքի չափազանց սղության մթնոլորտում, իր բոլշևիկյան կամքի ու համառության շնորհիվ կարողացավ վերականգնել ու վերազինել 11-րդ Կարմիր Բանակի հյուծված, հոգնած և կիսաքաղց զորամասերին։ 1919 թվի օգոստոսի 3-ի պարտ. կոնֆերանսում տված իր զեկուցման մեջ նա հայտարարեց.

«Քանի դեռ Աստրախանի երկրամասում կա թեկուզ և մեկ կոմունիստ, Վոլգա գետի գետաբերանը եղել է՛, է՛ և կլինի սովետական» (Սերգեյ Միրոնովիչ Կիրով, Պետհրատ, 1939, էջ 52)։

Այն ժամանակ, երբ ընկեր Ստալինի ղեկավարությամբ Ցարիցինի հերոսական գրավումով սկսվեց Կարմիր Բանակի լայն հարձակումն սպիտակ գվարդիականների դեմ, 11-րդ բանակը Կիրովի, Օրջոնիկիձեի հրամանատարությամբ, ջախջախիչ հարվածներով մաքրում է Հյուսիսային Կովկասը Դենիկինի և Կոլչակի ոհմակներից։

***

Առանձնապես վիթխարի է Սերգեյ Միրոնովիչի դերն Անդրկովկասի ժողովուրդների

համար, որոնք նրան միշտ էլ հիշում են մեծագույն երախտագիտության զգացմունքով։ Բաքվի ապստամբած պրոլետարիատը, Ադրբեջանի ողջ աշխատավորությունը 1920 թ. ապրիլին երբ հերոսական և անհավասար պայքար էր մղում անգլիական իմպերիալիզմի քսու վարձկանների՝ մուսավաթների դեմ, նրանց նողկալի ու բիրտ կրնկի տակից ազատվելու համար, եղբայրական մեծ օգնություն է ստանում ռուս ժողովրդից։ 1920 թ. ապրիլի 28-ի գիշերը հաղթական 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը Կիրովի, Օրջոնիկիձեի և Միկոյանի գլխավորությամբ, ինտերնացիոնալ գրահագնացքով Բաքու են մտնում։ Հաջորդ օրը Ադրբեջանը, մեծ ռուս ժողովրդի այդ օգնության շնորհիվ արդեն սովետական է դառնում։

Առանձնապես մեծ երախտապարտությամբ Սերգեյ Միրոնովիչին հիշում է հայ ժողովուրդը, որին դաշնակների նզովյալ տիրապետությունից ազատելու գործում նա բացառիկ մեծ օգնություն է ցույց տվել։ Այն ժամանակ, երբ Ադրբեջանի մուսավաթները, Վրաստանի մենշևիկները և Հայաստանի դաշնակները Անդրկովկասում ռևոլյուցիան կանխելու նպատակով հրահրում էին ադրբեջանցիներին, վրացիներին և հա-



յերին միմյանց դեմ, կազմակերպելով ազգամիջյան արյունահեղ ջարդեր, Սերգեյ Միրոնովիչը, Օրջոնիկիձեի և Միկոյանի հետ միասին 1920 թ. հուլիսին ուղարկում է Խատիսյանի դաշնակցական կառավարությանը կտրուկ մի հուշագիր, այդ կռիվների անմիջական դադարեցման սպառնալի պահանջով։

Հերոսական 11-րդ Կարմիր Բանակի զորամասերը Ադրբեջանում սովետական իշխանություն հաստատելուց հետո, Կիրովի, Օրջոնիկիձեի և Միկոյանի ղեկավարությամբ մեծ օգնություն են ցույց տալիս եղբայրական վրաց ժողովրդին Վրաստանում սովետական իշխանություն հաստատելու գործում։ Այդ նույն ժամանակ ոտքի են կանգնում նաև Հայաստանի աշխատավորները, որոնք ապստամբելով, մեծ ոգևորությամբ զենք են բարձրացնում դաշնակների կառավարության դեմ և Կիրովի, Օրջոնիկիձեի ու Միկոյանի ղեկավարած Կարմիր Բանակի զորամասերի օգնությամբ հաստատում են սովետական իշխանություն Հայաստանում։ Այնուհետև, 1921 թ. փետրվարին, երբ դաշնակցական բանդիտները կազմակերպեցին մեծ ավանտյուրա, արյան մեջ խեղդելով հայ աշխատավորությանը, Սերգեյ Միրո-

նովիչը մեծ աջակցություն է ցույց տալիս Հայաստանի աշխատավորությանը սովետական իշխանության նորից վերականգնելու, կազմակերպելով ու ղեկավարելով Հայաստանի բոլշևիկների ու աշխատավորության մղած պայքարը:

1920 թ. մայիսի 29-ին Կիրովը նշանակվում է ՌՍՖՍՌ-ի լիազոր ներկայացուցիչ մենշևիկյան Վրաստանում, որի ժամանակ նա մերկացնում է Նոյ Ժորդանիայի կառավարության կեղծիքն ու երեսպաշտությունը և ՌՍՖՍՌ-ի հետ կնքած պայմանագրային իրավունքների խախտումները:

1921 թ. Սերգեյ Միրոնովիչ Կիրովն ընտրըվում է Ադրբեջանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար: Նա մեծ խանդավառությամբ լծըվում է նավթային արդյունաբերության լենինյան-ստալինյան պլանի իրագործմանը:

Նա Միկոյանի և Օրջոնիկիձեի հետ միասին, ամենաեռանդուն, համառ և դժվարին պայքար է մղում, ինչպես մեծապետական շովինիզմի՝ Տրոցկու, Ռադեկի, Բուխարինի, այնպես և տեղական նացիոնալիզմի՝ Մդիվանու, Լոմինաձեի, Կադրլիի, Սուլթանովի դեմ և ջախջախիչ հարված հասցնելով նրանց, կարողանում է ամրապնդել Անդըր-



կովկասի և Հյուսիսային Կովկասի ժողովուրդների եղբայրությունը, հաստատելով Անդրկովկասյան ֆեդերացիան:

«Ադրբեջանի կոմունիստական պարտիան, ընկ. Կիրովի ղեկավարությամբ արագ կերպով ջախջախեց նացիոնալ ուկլոնիստներին» (Լ. ԲԵՐԻԱ):

Բագվի նավթահանքերը հանձին Կիրովի անձնվեր աշխատանքի, իրենց «սև ոսկով» վերականգնացրին երկրի ժողովրդական անտեսությունը և տրանսպորտը:

1926 թվին, երբ բոլշևիկների պարտիան մեծ Ստալինի ղեկավարությամբ ջախջախեց տրոցկիստական - զինովևական օպոզիցիան, ՀամԿ(բ)Պ Կենտկոմը Կիրովին նշանակում է Լենինգրադի Կ(բ)Պ մարզկոմի քարտուղար, որտեղ Կիրովը բոլշևիկի անողոքությամբ սկսում է ջախջախել Լենինգրադում բուն դրած օպոզիցիայի կողմնակիցներին, ունենալով միայն 1925 թ. դեկտեմբերից մինչև 1926 թ. փետրվարը նրանց մերկացնող 15-ից ավելի ելույթներ և զեկուցումներ: Որպես Լենինգրադի բոլշևիկների մարտական ղեկավար՝ Կիրովը չի խնայում և ոչ մի ջանք, ուժ, եռանդ՝ Լենինգրադի—Հոկտեմբերի այդ պատմական օրորանի— սոցիալիստական վերակառուցման

համար, նրա ժողովրդական անտեսության ծաղկման ու բարգավաճման համար։ Նրա ղեկավարությամբ և անմիջական մասնակցությամբ միայն, այդպիսի հաջողությամբ ավարտվեց Ստալինի անվան Սպիտակ-Բալթիկ ծովերի ջրանցքի շինարարությունը։

Սերգեյ Միրոնովիչը Լենինգրադի պարտիական ակտիվի ժողովին 1932 թ. սեպտեմբերին խստորեն զգուշացրեց որ՝

«Սոցիալիզմի թշնամիների հետ, այն մարդկանց հետ, որոնք հանդես են գալիս Հոկտեմբերի նվաճումների դեմ, մենք չենք վիճում և չենք պատրաստվում վիճել։ Մենք նրանց դեմ պայքար ենք մղում, որպես թշնամիների դեմ, որոնք վերջնականապես անցել են սպիտակ գվարդիականների կողմ, պրոլետարական դիկտատուրայի բացահայտ թշնամիների բանակը (Киров С. М.—Статьи и речи. Госиздат полит. лит. 1939 г. стр. 508).

Կիրովը բոլշևիկյան շշմեցուցիչ հարվածներով ջախջախեց Լենինգրադի տրոցկիստական-զինովևյան բանդաները, համառորեն պայքարելով լենինյան-ստալինյան պարտիայի գլխավոր գծից բոլոր շեղվողների և տատանվողների դեմ։ Ժողովրդի թշնամիները զգում էին, թե ինչպիսի անհողդողդ ուժ է իրենից ներկայացնում Սեր-



գեյ Միրոնովիչը, թե Ստալինի ինչպիսի անդավաճան և փայլուն զինակից է նա, որին սիրում և հարգում են ՍՍՌՄ ողջ ժողովուրդները և հատկապես՝ Անդրկովկասի ժողովուրդները։ Եվ այն բանի համար, որ նա ողջ պարտիայի սիրելին էր և ժողովրդի թշնամիների ամենամահացու ջախջախողը, նա ատելի էր տրոցկիստական-զինովևյան աչ և բոլոր այլ բանդիտների համար, ՍՍՌՄ ժողովուրդների բոլոր տեսակի թշնամիների համար։ Նրանք 1934 թ. դեկտեմբերի մեկին ամենից նենգաբար ուստորաբար վրեժխնդիր եղան Սերգեյ Միրոնովիչ Կիրովից, սպանելով նրան իր կաբինետում, տրոցկիստական-բուխարինական նողկալի չարագործի գնդակով։

***

Բյուրեղային, ազնիվ ու վեհ է Սերգեյ Միրոնովիչ Կիրովի բազմաբովանդակ կյանքը, որը մինչև վերջը նվիրված է եղել բանվոր դասակարգի մեծ գործին, կոմունիզմի հաղթանակի փառապանծ գործին։ Լինելով մեծ Ստալինի մերձավորագույն զինակից ու ամենահավատարիմ աշակերտը, նա խորունկ սեր ու անսահման նվիրվածություն էր տածում դեպի ամբողջ աշխատավորների հանճարեղ առաջնորդը, որի մասին նա խորին հուզմունքով ասում էր. «Դժվար է

մարդ իրեն պատկերացնում այդ գիգանտի կերպարանքը, որպիսին հանդիսանում է Ստալինը։

Վերջին տարիների ընթացքում, սկսած այն ժամանակից, երբ մենք աշխատում ենք առանց Լենինի, մենք չգիտենք մեր աշխատանքում կատարված ոչ մի շրջադարձ, ոչ մի քիչ թե շատ խոշոր ձեռնարկում, լոզունգ, ուղղություն՝ մեր քաղաքականության մեջ, որի հեղինակն ընկեր Ստալինը չլիներ, այլ ուրիշ որևէ մեկը»։ (Սերգեյ Միրոնովիչ Կիրով, Պետհրատ. 1939 թ. էջ 105)։

Կիրովը գլխավորելով ժողովրդական լայն մասսաներին, անհունորեն նվիրված լինելով նրանց, շարունակում էր համեստորեն սովորել նրանցից և երբեք չէր կտրում իր կապը նրանց հետ։ Սոցիալիզմի վիթխարի հաղթանակները տեսնելով, նա ցնծում էր կյանքի անհագ ծարավով, իրեն կոմունիզմին նվիրելու է՛լ ավելի մեծ տենչով ու օպտիմիզմով։

«Մեր հաջողությունները իրոք որ վիթխարի են։ Սատանան տանի, մարդկայնորեն ասած, այնքան ես ուզում ապրել ու ապրել...»—մեծ հուզմունքով բացականչեց նա պարտիայի 17-րդ համագումարին։ Սակայն



ժողովրդի գազազած թշնամիները՝ տրոցկիստական-բուխարինական վարձկան շները նենգորեն ձեռք բարձրացրին նրա ապրելու այդ մեծ երազի վրա։ Կիրովի՝ Լենինի-Ստալինի պարտիայի և բանվոր դասակարգի մեծ գործին մինչև վերջը նվիրված, անձնազոհ կյանքը փայլուն օրինակ է հանդիսանում ՍՍՌՄ ողջ աշխատավորներին և հատկապես երիտասարդությանը՝ թե ինչպես պետք է լինի ժողովրդին նվիրված բոլշևիկյան գործիչը, սոցիալիզմը կառուցող մարտիկը։ Սերգեյ Միրոնովիչի անցած ուղին ցույց է տալիս թե ինչպես պետք է ռևոլյուցիոն մարտիկը լինի համառ, անձնվեր, թշնամիների հանդեպ դաժան և Լենինի-Ստալինի փառապանծ դրոշին հավատարիմ։

Հավերժ է Սերգեյ Միրոնովիչ Կիրովի հիշատակը ողջ աշխատավորության սրտերում. դարից-դար, սերունդից-սերունդ նրանք մեծագույն հպարտությամբ կհիշեն ռևոլյուցիայի բոցաշունչ տրիբունի, սոցիալիզմի էպոխայի այդ հոյակապ գործչի անունը։



# ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ ԵՎ ՆՐԱ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*1936 թվի դեկտեմբերի 5-ին, Սովետների Համամիութենական 8-րդ արտակարգ համագումարն ընդունեց Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության նոր Կոնստիտուցիան։ Մեր հայրենիքի ժողովուրդը միահամուռ հրճվանքով ու ցնծությամբ դիմավորեց Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունումը։ Կոնստիտուցիայի ընդունման օրը— դեկտեմբերի 5-ը— այդ ժամանակից դարձավ մեծ, համաժողովրդական տոնի օր։*

*Ստալինյան Կոնստիտուցիան ցնծագին դիմավորեցին ամբողջ աշխարհի աշխատավորները, ամբողջ առաջավոր, առաջադեմ մարդկությունը։ Եթե Սովետական Միության ժողովուրդների համար Ստալինյան Կոնստիտուցիան նշանակում էր ամենից առաջ սո-*



*ցիալիզմի արդեն նվաճված հաղթանակների օրենսդրական ամրապնդումը, ապա կապիտալիստական երկրների աշխատավորները Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ տեսան մի ահեղ մեղադրական ակտ ընդդեմ կապիտալիզմի, տեսան որ իսկական դեմոկրատիայի միակ երկիրը, ժողովրդական ազատության ու ժողովրդական երջանկության երկիրը Սովետական Միությունն է։ Ստալինյան Կոնստիտուցիան կապիտալիստական երկրների աշխատավորներին զինեց կապիտալիզմի դեմ պայքարելու գաղափարական հզոր զենքով, ցույց տվեց նրանց, որ կապիտալիստական ստրկությունից դուրս գալու միակ ելքը, դեպի ազատ ու հրճվալից կյանքը տանող միակ ուղին— Սովետական Միության աշխատավորների ուղին է, սոցիալիստական ռևոլյուցիայի ուղին։*

## *ՀԱՂԹԱՆԱԿԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՆ*

*Ստալինյան Կոնստիտուցիան ծնունդ առավ այն արմատական փոփոխությունների հետևանքով, որոնք կատարվել էին ՍՍՌՄ հասարակական կյանքի բոլոր բնագավառներում 1924 թվից— ՍՍՌՄ առաջին Կոնստիտուցիայի ընդունման ժամանակից ի վեր։*

Հանրագումարի բերելով 1924 թվից հետո ՍՍՌՄ կյանքում տեղի ունեցած բոլոր փոփոխությունները, ընկեր Ստալինը «ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին» իր զեկուցման մեջ ասաց.

«Մեր սովետական հասարակությունը հասավ այն բանին, որ նա արդեն հիմնականում իրականացրեց սոցիալիզմը, ստեղծեց սոցիալիստական հասարակարգ, այսինքն՝ իրականացրեց այն, ինչ որ մարքսիստների մոտ այլ կերպ կոչվում է կոմունիզմի առաջին կամ ստորին փուլ։ Նշանակում է՝ մեզ մոտ արդեն հիմնականում իրականացված է կոմունիզմի առաջին փուլը՝ սոցիալիզմը» (Ի. Ստալին— «Լենինիզմի հարցերը» էջ 627, 11-րդ հրատ., հայ. թարգմ.)։

Մեր երկրում սոցիալիստական հասարակարգի կառուցումը, կոմունիզմի առաջին փուլի իրականացումը— բոլշևիկյան պարտիայի մեծագույն, իր համաշխարհային— պատմական նշանակությամբ անգնահատելի հաղթանակն է, սովետական ժողովրդի հաղթանակը։ Այդ հաղթանակի ձևակերպման և օրենսդրական ամրապնդման համար էլ հենց ստեղծվեց ՍՍՌՄ նոր Կոնստիտուցիան։

Ստալինյան Կոնստիտուցիան— ՍՍՌՄ-ում



կառուցված սոցիալիստական շինարարության վեհաքանչ հանրագումարն է։ Նրա մեջ արտացոլված և օրենսդրականորեն ամրապնդված են ՍՍՌՄ-ում սոցիալիզմի ձեռք բերած համաշխարհային-պատմական նվաճումները։

Սովետական ժողովուրդը նոր Կոնստիտուցիան անվանեց հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիա։ Այս բնորոշումը հիանալիորեն արտացոլում է Ստալինյան Կոնստիտուցիայի էությունը։ Կոնստիտուցիայի բոլոր դրույթները՝ արտացոլումն ու օրենսդրական ամրապնդումն են այն բանի, ինչ արդեն իրականացված է մեր երկրում, ինչ արդեն ձեռք է բերված ու նվաճված։

Ստալինյան Կոնստիտուցիայի առաջին հոդվածն ասում է.

«Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետությունն է»։

Այս հոդվածը լի է ամենախոր իմաստով։ Դա խոսում է սովետական հասարակության դասակարգային ստրուկտուրայի մասին և արտացոլում է այն փաստը, որ սոցիալիզմի հաղթանակի համար ՍՍՌՄ աշխատավորների մղած հերոսական պայքարի հե-

տևանքով մեր երկրում լիկվիդացիայի են ենթարկված շահագործող դասակարգերը։ Այդ հոդվածն արտացոլում և օրենսդրականորեն ամրապնդում է այն փաստը, որ մեր սովետական հասարակության մեջ այժմ չկան ո՛չ շահագործողներ, ո՛չ շահագործվողներ. մնացել են միայն շահագործումից ազատագրված, բարեկամական աշխատավոր դասակարգեր՝ բանվորներն ու գյուղացիները և, որպես մի հատուկ սոցիալական խումբ, սովետական սոցիալիստական ինտելիգենցիան։

ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինն ասաց.

«Ներկայիս սովետական հասարակության առանձնահատկությունը, ի տարբերություն ամեն մի կապիտալիստական հասարակությունից, այն է, որ նրանում չկան այլևս անտագոնիստական, թշնամի դասակարգեր, շահագործող դասակարգերը լիկվիդացիայի են ենթարկված, իսկ բանվորները, գյուղացիները և ինտելիգենցիան, որոնք կազմում են սովետական հասարակությունը, ապրում և աշխատում են բարեկամական համագործակցության սկզբունքներով»։ (Նույն տեղը, էջ՝ 716—717)։



Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ պարզ, հստակ բառերով ձևակերպված է, որ աշխատավոր դասակարգերը Սովետների երկրի միակ և լիիշխան կառավարողներն ու տերերն են։ Ստալինյան Կոնստիտուցիայի 3-րդ հոդվածն ասում.

«Ամբողջ իշխանությունը ՍՍՌՄ-ում պատկանում է քաղաքի և գյուղի աշխատավորներին հանձինս աշխատավորների դեպուտատների Սովետների»։

Դրանով իսկ, Ստալինյան Կոնստիտուցիան իրավաբանորեն ձևակերպեց և օրենսդրականորեն ամրապնդեց այն փաստը, որ ՍՍՌՄ-ում ամբողջ իշխանությունը պատկանում է աշխատավոր ժողովրդին, որ ՍՍՌՄ-ում, քաղաքակիրթ մարդկության պատմության մեջ առաջին անգամ, իրականացված է իսկական ժողովրդաիշխանություն:

Մինչև այժմ ամբողջ համաշխարհային պատմության մեջ ամեն մի քաղաքական իշխանություն եղել է իշխանություն ժողովրդի նկատմամբ, աննշան մի բուռ շահագործողների իշխանությունը՝ շահագործվողների վիթխարի մեծամասնության նկատմամբ։ Այդպիսին է քաղաքական իշխանությունը նաև ժամանակակից կապիտալիստա-

կան երկրներում։ Բոլոր բուրժուական կոնստիտուցիաները ելնում են այն բանից, որ «ինչ պարտիա էլ իշխանության գլուխ անցնի, հասարակության պետական ղեկավարությունը (դիկտատուրան) պետք է պատկանի բուրժուազիային, որ կոնստիտուցիան հարկավոր է՝ ունևոր դասակարգերին հաճելի ու ձեռնտու հասարակական կարգերն ամրապնդելու համար» (Ի. Ստալին— «Լենինիզմի հարցերը» էջ՝ 629, 11-րդ հրատ. հայ. թարգմ.)։

Իսկ Ստալինյան Կոնստիտուցիան ելնում է այն բանից, որ սովետական «հասարակությունը բաղկացած է երկու միմյանց բարեկամ դասակարգերից՝ բանվորներից և գյուղացիներից, որ իշխանության գլուխ են կանգնած հենց այդ աշխատավորական դասակարգերը, որ հասարակության պետական ղեկավարությունը (դիկտատուրան) պատկանում է բանվոր դասակարգին՝ որպես հասարակության առաջավոր դասակարգի, որ կոնստիտուցիան հարկավոր է նրա համար, որպեսզի ամրապնդենք աշխատավորությանը հաճելի ու ձեռնտու հասարակական կարգերը» (Նույն տեղը)։



## ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՄԻՄՅԱՆՑԻՑ ԱՆԲԱԺԱՆԵԼԻ ԵՆ

Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ նրա հանճարեղ ստեղծողի ձեռքով ուրվագծված է սոցիալիստական հասարակության վեհասքանչ կերպարը։ Կոնստիտուցիան օրենսդրականորեն ամրապնդեց սոցիալիզմի մեծ, սրբազան սկզբունքները, որոնք արդեն իրականացված են ՍՍՌՄ-ում, այն է՝ «ով չի աշխատում, նա չի ուտի», «յուրաքանչյուրից ըստ նրա ընդունակությունների, յուրաքանչյուրին ըստ նրա աշխատանքի»։

Սոցիալիզմի այս արմատական սկզբունքներն ամրապնդելով որպես մեր երկրի Հիմնական օրենքը, Ստալինյան Կոնստիտուցիան դրանով իսկ ասում է, որ սոցիալիզմն ու աշխատանքը միմյանցից անբաժանելի են, որ սոցիալիզմը խարսխվում է աշխատանքի վրա, որ այդ պատճառով էլ աշխատանքը ՍՍՌՄ-ում ոչ միայն պարտականություն է, այլև աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պատվի գործն է։

Ստալինյան Կոնստիտուցիային լիովին համապատասխան, մեր սոցիալիստական երկրում աշխատանքը և աշխատանքի մարդիկ շրջապատված են պատվի ու փառքի պսակով։

«Ո՛չ թե գույքային դրությունը,— ասում է ընկեր Ստալինը,— ո՛չ թե ազգային ծագումը, ո՛չ թե սեռը, ո՛չ թե պաշտոնեական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են որոշում նրա դրությունը հասարակության մեջ» (Նույն տեղ՝ էջ՝ 630—631)։

Մեր սոցիալիստական հասարակության անդամների ճնշող մեծամասնությունը կոմունիստական հասարակարգի գիտակից ու ակտիվ կառուցողներ են, և հասարակության բարօրության օգտին կատարվող աշխատանքը նրանց համար պատվի գործ է, արիության գործ է, փառքի ու հերոսության գործ է։

Բայց մեր երկրում դեռ կան նաև հետամնաց մարդիկ, դեռ կան կապիտալիզմի մնացուկները կրողներ ու պահպանողներ, որոնք ձգտում են ապրել առանց աշխատելու և պետությունից կորզել ավելի շատ, իսկ պետությանը տալ ավելի քիչ ու ավելի վատ աշխատանք։ Այդպիսի մարդկանց վարմունքը հակասում է սոցիալիզմի հիմնական, արմատական սկզբունքին, այն է՝ «ով չի աշխատում, նա չի ուտի»։ Խախտել այդ սկզբունքը, նշանակում է խախտել



Ստալինյան Կոնստիտուցիան, որի պահպա-
նումը յուրաքանչյուր սովետական քաղաքա-
ցու պարտականությունն է։ Այդ սկզբունքը
խախտողների, մեր երկրի Հիմնական օրեն-
քը խախտողների դեմ է ուղղված ՍՍՌՄ
Գերագույն Սովետի Նախագահության 1940
թվի հունիսի 26-ի Հրամանագիրը, որը
խիստ պատիժ է սահմանում գործալքման,
լողլքության, չվելու համար։ Ինչպես այդ
Հրամանագիրը, այնպես էլ պարտիայի ու
կառավարության մի շարք որոշումները,
որոնց նպատակն է կոլխոզների հանրային
տնտեսության ամրապնդումը և նրան-
ցում աշխատանքային կարգապահության
ամրացումը, սոցիալիզմի այն արմատական
սկզբունքի հետևողական իրագործումն է,
որը գրի է առնված Ստալինյան Կոնստի-
տուցիայի մեջ։ Լենինն ասել է. «...Սոցիա-
լիզմի առաջին, հիմնական, արմատական
սկզբունքն է՝ «Ով չի աշխատում, նա չի էլ
ուտի»...։ Այս պարզ, ամենահասարակ ու
ամենաակնբախ ճշմարտության մեջ է սո-
ցիալիզմի հիմքը, նրա ուժի անսպառ աղ-
բյուրը, նրա վերջնական հաղթանակի ան-
ընկճելի երաշխիքը» (Լենին. Երկեր, հատ.
23-րդ, էջ՝ 26)։

# ԱՄԵՆԱԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Ստալինյան Կոնստիտուցիայի ամենաբնորոշ գիծն է՝ մինչև վերջ ծավալուն, հետևողական սոցիալիստական դեմոկրատիզմը:

Սովետական ժողովուրդն իր Կոնստիտուցիան անվանում է աշխարհում ամենադեմոկրատականը, որովհետև միայն Ստալինյան Կոնստիտուցիայումն է, որ համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ հռչակված և ռեալ կերպով ապահովված է իսկական դեմոկրատիան բոլորի համար: Առանց որևէ վերապահման ու սահմանափակման, Ստալինյան Կոնստիտուցիան ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների համար, անկախ նրանց ազգությունից, սեռից, ծագումից ու պաշտոնեական դրությունից, ճանաչում է իրավունքների և հասարակության առջև նրանց պարտականությունների հավասարություն:

Ստալինյան Կոնստիտուցիան ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների համար ճանաչում և ամրապնդում է այնպիսի մեծ իրավունքներ, ինչպես՝ աշխատանքի, հանգստի, կրթության իրավունք և այլն,— իրավունքներ, որ չի՛ տվել ու չի՛ տալիս աշխարհում ոչ մի



կոնստիտուցիա: Ստալինյան Կոնստիտուցիան ոչ միայն հռչակում է այդ իրավունքները, այլև ապահովում է դրանց կենսագործումը:

Աշխատավորության շահերին համապատասխան և սոցիալիստական կարգերն ամրապնդելու նպատակով, Ստալինյան Կոնստիտուցիան ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների համար ապահովում է դեմոկրատական լայն ազատություններ—խոսքի ու մամուլի ազատություն, ժողովների, միտինգների, փողոցային երթերի ու դեմոնստրացիաների ազատություն:

Ստալինյան Կոնստիտուցիան վերացրեց ընտրական հին սիստեմը և սահմանեց ընդհանուր, ուղղակի, հավասար ընտրություններ՝ գաղտնի քվեարկությամբ՝ աշխատավորների դեպուտատների բոլոր Սովետների ընտրությունների համար, ներառյալ սովետական իշխանության բարձրագույն օրգանները:

Ստալինյան Կոնստիտուցիան ամրապնդեց կնոջ հավասարությունը տղամարդու հետ՝ տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարակական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում, հավասարություն, որ նվաճել է Հոկտեմբերյան Սոցիալիստական

Մեծ ռևոլյուցիան, և կնոջ համար ապահովեց այդ իրավունքների լիակատար կենսագործման հնարավորությունը։

Ստալինյան Կոնստիտուցիայի դեմոկրատիզմը ոչ թե սովորական, այլ նոր տիպի դեմոկրատիզմ է— սոցիալիստական դեմոկրատիզմ, այսինքն՝ դեմոկրատիզմ աշխատավորների համար։

«ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին» տված իր զեկուցման մեջ ընկեր Ստալինն ասաց. «Դեմոկրատիան կապիտալիստական երկրներում, որտեղ կան անտագոնիստական դասակարգեր, վերջին հաշվով դեմոկրատիա է ուժեղների համար, դեմոկրատիա է ունևոր փոքրամասնության համար։ Դեմոկրատիան ՍՍՌՄ-ում, ընդհակառակը, դեմոկրատիա է աշխատավորների համար, այսինքն՝ դեմոկրատիա է բոլորի համար»։ (Ի. Ստալին. «Լենինիզմի հարցերը», էջ՝ 639. 11-րդ հրատ. հայ. թարգմ.)։

Ստալինյան Կոնստիտուցիան ամբողջ աշխարհի աշխատավորների առջև ցուցադրեց սովետական, սոցիալիստական դեմոկրատիայի անհամեմատելի գերակշռությունը բուրժուական կեղծավոր ու կեղծ դեմոկրատիայի նկատմամբ։



Դրախտը՝ հարուստների համար, խաբեություն և ծուղակ է՝ չքավորների համար,— այսպես է շեշտակի ու ճիշտ կերպով բնորոշել Լենինը բուրժուական դեմոկրատիայի էությունը։ Բուրժուական դեմոկրատիան հատկապես կեղծ, խղճուկ ու ողորմելի տեսք ունի այժմ, երկրորդ իմպերիալիստական պատերազմի դարաշրջանում, երբ բուրժուազիան առանց քաշվելու ոչնչացնում է դեմոկրատական իրավունքների ու ազատությունների վերջին մնացորդները։

Մինչև վերջ ծավալելով հետևողական սովետական դեմոկրատիզմը, Ստալինյան Կոնստիտուցիան նոր դարաշրջան բաց արեց դեմոկրատիայի զարգացման մեջ— համաժողովրդական սոցիալիստական դեմոկրատիզմի իրականացման դարաշրջանը։

## ՍՍՌՄ ՔԱՂԱՔԱՑՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների համար ճանաչելով և ամրապնդելով մեծ իրավունքներ ու չտեսնված դեմոկրատական ազատություններ, Ստալինյան Կոնստիտուցիան որոշում է նաև քաղաքացիների պարտականությունները։

Պահպանել ՍՍՌՄ Կոնստիտուցիան, պահ-

պանել աշխատանքային կարգապահությունը, ազնվորեն աշխատել, աշխատանքը դիտելով որպես ամենաառաջնահերթ, պատվավոր պարտականություն և որպես պատվի գործ. ազնվորեն կատարել իր հասարակական պարտքը. հարգել սոցիալիստական հանրակեցության կանոնները. պահպանել և ամրապնդել հանրային սեփականությունը. ազնվաբար պաշտպանել իր սոցիալիստական հայրենիքը— ահա՛ թե որոնք են ՍՍՌՄ քաղաքացիների պատվավոր ու սրբազան պարտականությունները, որ գրի են առնված Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ։

ՍՍՌՄ քաղաքացիների պարտականություններն ու իրավունքները միմյանցից անբաժանելի են։ Կատարելով ՍՍՌՄ քաղաքացու պարտականությունները, մենք ամրապնդում ենք մեր սոցիալիստական հայրենիքի հզորությունը և պետությանն օգնում ենք պահպանելու այն իրավունքները, որոնք ամրապնդված են մեզ համար Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ։ Բարձրացնելով աշխատանքի արտադրողականությունը, հոգատար վերաբերվելով դեպի հանրային սեփականությունը, ամրապնդելով այն, մենք դրանով իսկ ամրապնդում ու զարգացնում ենք մեր իրավունքների նյութական հիմքը,



ՍՍՌՄ աշխատավորների ունևոր ու կուլտուրական կյանքի աղբյուրը։ ՍՍՌՄ բոլոր քաղաքացիների կողմից սոցիալիստական հայրենիքի հանդեպ ունեցած իրենց պարտականությունների ազնիվ ու անշեղ պահպանումը ՍՍՌՄ-ում սոցիալիստական կարգերի ամրապնդման ու զարգացման կարևորագույն, անհրաժեշտ պայմանն է։

ՍՍՌՄ քաղաքացիների պարտականությունները, որ թվարկված են Կոնստիտուցիայի մեջ, որոշում են սոցիալիստական բարոյականության հիմնական նորմաների բովանդակությունը։ Դրանք աշխատավորների մեջ դաստիարակում են սովետական հայրենասիրության մեծ ու ազնիվ զգացմունքը։

Սոցիալիստական հանրակեցության կանոնները, որ ամրապնդված են Ստալինյան Կոնստիտուցիայի մեջ, պահանջում են հարգանք դեպի աշխատավոր մարդը, որը մեր երկրի ամենաարժեքավոր կապիտալն է, պահանջում են հարգանք դեպի կոլեկտիվը և պահանջում են, որ անձնական շահերը ենթարկվեն հանրային շահերին։

Ի տարբերություն կապիտալիստական հանրակեցության կանոններից ու սովորություններից, որոնք հիմնված են՝

«կամ դու կկողոպտես ուրիշին, կամ ուրիշը կկողոպտի քեզ» սկզբունքի վրա, սոցիալիստական հանրակեցության կանոնները հիմնված են շահագործումից ազատ աշխատողների ընկերական համագործակցության ու սոցիալիստական փոխօգնության վրա։ Դրանք հիմնված են գիտակցական կարգապահության, սոցիալիստական սեփականության մասին, հայրենիքի բարեկեցության մասին մշտական հոգատարության վրա։

Սովետական ժողովուրդը, որին Լենինի-Ստալինի պարտիան դաստիարակում է կոմունիստական մորալի բարձր սկզբունքների ոգով, ջերմագին ողջունում է պարտիայի ու կառավարության բոլոր ձեռնարկումները, որոնց նպատակն է՝ պաշտպանել ու պահպանել սոցիալիստական հանրակեցության կանոնները, պայքարել լոդրերի, մոլթապաշտների, խուլիգանների, ժուլիկների, հանրային բարիքը հափշտակողների դեմ։ Այդ բոլոր ձեռնարկումների մեջ նա տեսնում է հաստատումն ու հետագա զարգացումն այն բանի, ինչ ամրագրված է Ստալինյան Կոնստիտուցիայում։



## ԼԵՆԻՆՅԱՆ-ՍՏԱԼԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Ստալինյան Կոնստիտուցիայի հիմնական ու հիանալի առանձնահատկություններից մեկն է նրա ամենախոր ինտերնացիոնալիզմը:

Բոլոր բուրժուական կոնստիտուցիաները ներծծված են նացիոնալիզմով, նրանք ելնում են ռասաների ու ազգերի անիրավահավասարությունից։ Նրանք օրինականացնում, սրբագործում են մեկ ազգի ստրկացումը մյուսի կողմից։ Ի տարբերություն բուրժուական կոնստիտուցիաներից, Ստալինյան Կոնստիտուցիան ելնում է այն բանից, որ բոլոր ազգերն ու ռասաները պետք է օգտվեն միատեսակ իրավունքներով։

Ստալինյան Կոնստիտուցիան ամրապնդում է մեր երկրում սոցիալիզմի մեծագույն նվաճումը — ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի բարեկամությունը։

ՍՍՌՄ ժողովուրդների անխորտակելի, եղբայրական բարեկամությունը, որ ստեղծվել ու ամրապնդվել է սոցիալիզմի հաղթանակների բազայի վրա, հանդիսանում է լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հաղթանակը, մի հաղթանակ, որն

անընդհատելի է իր համաշխարհային-պատմական նշանակությամբ։

Ինչո՞վ բացատրել այդ հաղթանակը,— հարց է տալիս ընկեր Ստալինը «ՍՍՌ Միության Կոնստիտուցիայի նախագծի մասին» իր զեկուցման մեջ և, պատասխանելով առաջադրված հարցին, ասում է.

«Ազգամիջյան կռիվների հիմնական կազմակերպիչներ հանդիսացող շահագործող դասակարգերի բացակայությունը. փոխադարձ անվստահություն սերմանող և ազգայնական կրքեր բորբոքող շահագործման բացակայությունը. բանվոր դասակարգի իշխանության գլուխ լինելը, մի դասակարգ, որը հանդիսանում է ամեն տեսակ ստրկացման թշնամի և ինտերնացիոնալիզմի իդեաների հավատարիմ կրող. ժողովուրդների փոխադարձ օգնության իրական կենսագործումը տնտեսական ու հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում. վերջապես, ՍՍՌՄ ժողովուրդների ազգային կուլտուրայի ծաղկումը՝ ազգային ըստ ձևի և սոցիալիստական ըստ բովանդակության,— այս բոլորը և նրանց նման գործոնները հասցրին այն բանին, որ արմատապես փոխվեց ՍՍՌՄ-ի ժողովուրդների կերպարանքը, անհետացավ նրանց միջից փոխադարձ ան-



վստահության զգացմունքը, զարգացավ նրանց մեջ փոխադարձ բարեկամության զգացմունքը և այսպիսով կարգավորվեց ժողովուրդների իսկական եղբայրական համագործակցությունը միասնական միութենական պետության սիստեմում» (Ի. Ստալին. «Լենինիզմի հարցերը» էջ՝ 626, 11-րդ հրատ. հայ. թարգմ.)։

Բոլշևիկյան ազգային քաղաքականության հաղթանակի պատճառների այս հիանալի ստալինյան անալիզը ցույց է տալիս, որ իրոք ամուր, բազմազգ պետություն կարող է գոյություն ունենալ միմիայն սոցիալիզմի բազայի վրա։

Այժմ, երբ իմպերիալիստները, որոնք կապիտալիստական երկրների ժողովուրդներին ներքաշել են երկրորդ իմպերիալիստական պատերազմի մեջ, ուժեղ թափով ձգնում են իրենց իսկական շահերը թաքցնել ազգային շահերի պաշտպանության լոզունգներով, երբ գաղութային երկրների ազգային ճնշումն ու կողոպուտը հասել են չտեսնված չափերի, Ստալինյան Կոնստիտուցիայի ինտերնացիոնալ սկզբունքների նշանակությունը հատկապես մեծ է։ Ստալինյան Կոնստիտուցիան ամբողջ աշխարհի ճնշված ժողովուրդներին ցույց է տալիս

ՍՍՌՄ ժողովուրդների փորձով պրակտիկորեն ստուգված ուղին, որը տանում է դեպի ազգային ճնշման ոչնչացումը, դեպի բոլոր ռասաների ու ազգերի հավասարության հաստատումը։

Վերջին ժամանակներս, ՍՍՌՄ հզորության և միջազգային ազդեցության աճման ու ամրապնդման և մեր արտաքին քաղաքականության հաջողությունների հետևանքով Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքը ներհոսեցին նոր ժողովուրդներ, նոր ռեսպուբլիկաներ։ Եվ ուշագրավ է, որ Արևմտյան Ուկրաինայի ու Արևմտյան Բելոռուսիայի, Բեսարաբիայի ու Հյուսիսային Բուկովինայի ազատագրված ժողովուրդների, Լատվիայի, Լիտվայի ու Էստոնիայի ժողովուրդների առաջին ցանկությունը, առաջին վճիռն էր՝ կանգնել Սովետների երկրի կարմիր դրոշի տակ, Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի տակ։ Այս հանգամանքը վառ կերպով վկայում է այն մեծ ձգողական, ռեվոլյուցիոնացնող ուժի մասին, որ ունեն Ստալինյան Կոնստիտուցիայի սկզբունքները, վկայում է նրա մեծ, համաշխարհային-պատմական նշանակության մասին։

Հանդես գալով ՍՍՌՄ Գերագույն Սովետի



7-րդ սեսսիայում և խոսելով Սովետական Միության մեջ Լիտվայի, Լատվիայի ու Էստոնիայի մտնելու մասին որպես միութենական սովետական սոցիալիստական ռեսպուբլիկաներ, ընկ. Մոլոտովն ասաց.

«Չկա որևէ տարակույս, որ այդ ռեսպուբլիկաների մտնելը Սովետական Միության մեջ, նրանց համար կապահովի տնտեսական արագ վերելքը և ազգային կուլտուրայի բազմակողմանի ծաղկումը, որ Սովետական Միության մեջ մտնելով, նրանց ուժերը շատ անգամ կբազմապատկվեն, նրանց անվտանգությունը կամրապնդվի և, դրա հետ միասին, է՛լ ավելի կաճի Մեծ Սովետական Միության հզորությունը»։

Ընկ. Մոլոտովի այս խոսքերի մեջ արտահայտված է ամբողջ սովետական ժողովրդի այն համոզմունքը, որ բոլոր նոր սովետական ռեսպուբլիկաների համար ապահովված է նույնպիսի արագ և քուռն ծաղկում, ինչպես որ Ստալինյան Կոնստիտուցիայի արևի տակ արագորեն աճում ու ծաղկում է ամբողջ Սովետական Միությունը։

Այս համոզմունքն արդեն այժմ հաստատվում է վառ, համոզեցուցիչ փաստերով։ Լատվիայում, Լիտվայում, Էստոնիայում,

Բեսարաբիայում, Հյուսիսային Բուկովինայում արդեն հիմնականում վերացված է գործազրկությունը, աշխատավոր գյուղացիությունն ստացել է կալվածատիրական հողերը, սկսվել է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի բուռն ծաղկումը:

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ԱՐԵՎԻ ՏԱԿ

Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունումը նշանակում էր շրջադարձ Սովետական Միության քաղաքական կյանքում, շրջադարձ դեպի երկրի քաղաքական կյանքի լիակատար դեմոկրատիզացիան: Ստալինյան Կոնստիտուցիան քաղաքական ակտիվ կյանքի բարձրացրեց նոր միլիոնավոր աշխատավորների, անչափ ընդարձակվեց ու ամրապնդվեց բանվորների և գյուղացիների սոցիալիստական պետության բազան:

Սովետական Միության բոլոր աշխատավորների համար ճանաչելով ու ամրապնդելով մեծ իրավունքներ և չտեսնված դեմոկրատական ազատություններ, մեր երկրի բոլոր քաղաքացիներին միավորելով իրավունքների և հասարակության հանդեպ ունեցած պարտականությունների հավասարությամբ, Ստալինյան Կոնստիտուցիան



էլ ավելի խորացրեց ու ամրապնդեց սովետական հասարակության բարոյական-քաղաքական միասնությունը, որը, ինչպես ասվում է ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարի բանաձևի մեջ, «մեր հայրենիքի հետագա աճման ու ծաղկման լավագույն երաշխիքն է, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի երաշխիքը»:

Այս փաստի ամենապերճախոս հաստատումն է աշխատավորների դեպուտատների Սովետների ընտրություններին ընտրողների մասնակցության չտեսնված բարձր տոկոսը և բացառիկ միահամուռությունը՝ քվեարկության ժամանակ: Միահամուռ կերպով ձայն տալով կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին, սովետական ժողովուրդը դրանով իսկ ձայն տվեց նոր Կոնստիտուցիայի օգտին, հաղթանակած սոցիալիզմի Կոնստիտուցիան ստեղծողի՝ ընկեր Ստալինի օգտին:

Խոսելով սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնության մասին, որն իր արտահայտությունը գտավ աշխատավորների դեպուտատների Սովետների ընտրություններում կոմունիստների և անպարտիականների բլոկի հաղթանակների մեջ, Սովետական կառավարության ղեկավար ընկ. Մոլոտովն ասաց.

«Ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը մեր երկրում ունի նաև իր կենդանի մարմնավորումը։ Մենք ունենք մի անուն, որ դարձել է սոցիալիզմի հաղթանակների սիմվոլը։ Այդ անունը միևնույն ժամանակ սովետական ժողովրդի բարոյական ու քաղաքական միասնության սիմվոլն է։ Դուք գիտեք, որ այդ անունն է Ստալինը»։ (Վ. Մոլոտով. «Հոկտեմբերյան ռևոլյուցիայի քսանամյակի առթիվ», Պարտհրատ, 1937 թ., էջ՝ 38)։

Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունման օրից հետո Սովետական Միությունը ձեռք է բերել նոր փայլուն հաղթանակներ։ Սովետական Միության աշխատավորները ժամանակից շուտ կատարեցին ստալինյան երկրորդ հնգամյակը և հաջողությամբ կատարում են երրորդ հնգամյա պլանը։

Ստալինյան Կոնստիտուցիան,— սոցիալիզմի և բանվորա-գյուղացիական դեմոկրատիայի հաղթանակի Կոնստիտուցիան— ամրապնդեց այն համաշխարհային-պատմական փաստը, որ Սովետական Միությունը թևակոխել է զարգացման նոր շրջան, անդասակարգ սոցիալիստական հասարակության կառուցումն ավարտելու և սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը։



Այս պատմական նոր ժամանակաշրջանում սովետական ժողովուրդը պետք է առաջին հերթին լուծի ՍՍՌՄ հիմնական տնտեսական խնդիրը, որ առաջադրեց Համ.Կ(բ)Պ 18-րդ համագումարը, այն է՝ տնտեսական տեսակետից ևս հասնել ու առաջ անցնել Եվրոպայի առավել զարգացած կապիտալիստական երկրներից և Ամերիկայի Միացյալ Նահանգներից։

Այս վիթխարի խնդրի լուծումը կախված է այն բանից, թե ՍՍՌՄ բոլոր քաղաքացիները որքան խստորեն ու անշեղորեն կըպահպանեն Ստալինյան Կոնստիտուցիայի սկզբունքներն ու նրա մեջ մատնանշված քաղաքացիական պարտականությունները և ամենից առաջ ամենաառաջնահերթ ու ամենապատվավոր պարտականությունը, այն է՝ ազնվորեն աշխատել ի բարօրություն սոցիալիստական հայրենիքի։ Այս ժամանակաշրջանում վճռական նշանակություն է ստանում աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը, կապիտալիզմի մնացուկների վերացումը մարդկանց՝ կոմունիստական հասարակարգ կառուցողների գիտակցության միջից։ Աշխատավորների կոմունիստական դաստիարակության վիթխարի խնդրի իրականացման գործում Ստա-

լինյան Կոնստիտուցիան կոչված է խաղալու բացառիկ մեծ դեր, որովհետև իսկական կոմունիստական դաստիարակությունը — դա դաստիարակությունն է Ստալինյան Կոնստիտուցիայի ոգով, ՍՍՌՄ քաղաքացիների պարտականությունների ոգով, որոնք ձևակերպված են նրա մեջ։

Ստալինյան Կոնստիտուցիայի ընդունումով անչափ աճեց Սովետական Միության հեղինակությունն ու ազդեցությունն ամբողջ աշխարհի աշխատավորության մեջ, ամբողջ առաջադեմ մարդկության մեջ։ Ամբողջ աշխարհի աշխատավորները տեսան, որ այն, ինչի մասին իրենք երազում են, ինչի նրանք ձգտում են, Սովետական Միության մեջ կենսագործված է, դարձել է օրենք։

Հանդիսանալով հաղթանակած սոցիալիզմի և մինչև վերջ ծավալուն, հետևողական սոցիալիստական դեմոկրատիզմի կոնստիտուցիա, Ստալինյան Կոնստիտուցիան սոցիալիստական ռեվոլյուցիայի գործի, Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի գործի մեծության, կենսականության և անպարտելիության կենդանի ու ամենավառ վկայությունն է։

---



Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

*(ԶԵԿՈՒՅՑՈՒՄ ՄՈՍԿՎԱ ՔԱՂԱՔԻ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱԿՏԻՎԻ ԺՈՂՈՎՈՒՄ 1940 Թ. ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 2-ԻՆ)*

Ընկերներ։ Քսան տարի առաջ, հենց 1920 թվի հոկտեմբերի 2-ին Վլադիմիր Իլիչ Լենինը Ռուսաստանի Կոմունիստական Երիտասարդական Միության Համառուսաստանյան երրորդ համագումարում հանդես եկավ կոմունիստական դաստիարակությանը նվիրված մի ճառով։ Դիմելով կոմերիտմիությանը, նա ասաց, որ կապիտալիստական հասարակության մեջ դաստիարակված մեր

սերունդը հազիվ թե կենսագործի կոմունիստական հասարակություն ստեղծելու խնդիրը։ Այդ խնդիրը դրվում է երիտասարդության վրա։

Եվ ահա այսօր, երբ դուք ծափահարում էիք, ես ակամայից հիշեցի այդ խոսքերը և եկա այն մտքին, որ իմ առջև նստած են հենց այն նախկին կոմերիտականները, մարդկանց այն խումբը, որոնց դիմել է Լենինը և որոնք այժմ, արդեն որպես հասակավորներ, կյանքի փորձ ստանալով, ակտիվորեն մասնակցում են սոցիալիստական շինարարությանը։ Եվ ես ձեզ հետ միասին ծափահարում եմ հենց ձեզ՝ սոցիալիզմի շինարարներին։

Կոմունիստական դաստիարակությանը մեզ մոտ շատ ուշադրություն են նվիրում։ Իզուր չէ, որ «դաստիարակություն» բառը փայլում է մեր մամուլում։

Սակայն եթե փորձենք այս կամ այն չափով համակողմանի ու հակիրճ կերպով ձևակերպել, թե ինչ բան է ընդհանրապես դաստիարակությունը, ապա զգալի դժվարությունների կհանդիպենք։ Հաճախ դաստիարակությունը շփոթում են ուսուցման հետ։ Հասկանալի է, որ դաստիարակությունը մեծ նշանակություն ունի ուսուցմանը, բայց ոչ մի



դեպքում նույնանիշ չի նրան։ Հեղինակավոր մանկավարժները գտնում են, որ դաստիարակությունն ավելի լայն հասկացողություն է, քան ուսուցումը։ Նա իր առանձնահատկություններն ունի։

Իմ կարծիքով, դաստիարակությունը որոշ, նպատակասլաց և սիստեմատիկ ներգործություն է դաստիարակվողի հոգեբանության վրա՝ դաստիարակողին ցանկալի հատկություններ նրա մեջ արմատավորելու համար։ Ինձ թվում է, որ այսպիսի ձևակերպումը (հասկանալի է, որ ամենի համար անպարտադիր) ընդհանուր գծերով ընդգրկում է այն ամենը, ինչ մենք դնում ենք դաստիարակություն հասկացողության մեջ, այսինքն՝ որոշ աշխարհայացքի, բարոյականության և մարդկային հանրակեցության կանոնների արմատավորում, բնավորության և կամքի որոշ գծերի, սովորության ու ճաշակի մշակումը ֆիզիկական որոշ ունակությունների զարգացում և այլն։

Դաստիարակության գործն ամենադժվարին գործերից մեկն է։

Լավագույն մանկավարժներն այն համարում են ոչ միայն գիտության, այլև արվեստի գործը։ Նրանք նկատի ունեն դաստիարակչի, հասկանալի է, համեմատաբար

սահմանափակ դաստիարակությունը։ Բայց կա և կյանքի ոլորտը, որտեղ տեղի է ունենում մասսաների դաստիարակության անընդհատ պրոցեսը, որ դաստիարակը կյանքն է, պետությունը, պարտիան, իսկ դաստիարակվողները՝ միլիոնավոր հասակավոր մարդիկ՝ տարբեր իրենց կենսափորձով, քաղաքական փորձով։ Այս գործը չափազանց բարդ է։

Ես այսօր ուզում եմ կանգ առնել հենց այս դաստիարակության վրա, մասսաների դաստիարակության վրա։

I

Էնգելսն իր «Անտի-Դյուրինգ» գրքում գրում է. «...Մարդիկ գիտակցորեն կամ անգիտակցորեն իրենց էթիկական հայացքները, վերջին հաշվով, քաղում են իրենց դասակարգային դրության գործնական պայմաններից, արտադրության և փոխանակության տնտեսական հարաբերություններից... Բարոյականությունը միշտ եղել է դասակարգային բարոյականություն։ Նա կամ արդարացրել է տիրող դասակարգի տիրապետությունը և շահերը, կամ արտացոլել ճնշված, բայց արդեն բավականաչափ ամրապնդված դասակարգի ցասումն ընդդեմ այդ տիրապետության և պաշտպանել ճնշվածների ապագա շահերը»։



Այսպիսով, դասակարգային հասարակության մեջ երբեք չի եղել և չի կարող լինել արտադասակարգային կամ վերդասակարգային դաստիարակություն։

Բուրժուական հասարակության մեջ դաստիարակությունն ամբողջապես տոգորված է կեղծավորությամբ, իշխող դասակարգերի շահամոլական շահերով, նա կրում է խորապես հակասական բնույթ, որն արտացոլում է կապիտալիստական հասարակության անտագոնիզմը։

Կապիտալիստների իդեալն է՝ բանվորներին և գյուղացիներին տեսնել իրենց հլու-հպատակ ծառաները դարձած, որոնք անմռունչ կերպով կրում են շահագործման լուծը։ Ելնելով սրանից կապիտալիստները չէին ցանկանա բանվորների և գյուղացիների մեջ դաստիարակել համարձակություն և արիություն, չէին ցանկանա որևէ կրթություն տալ նրանց։ Չէ՞ որ ավելի հեշտ է գործը գլուխ բերել խեղճ ու խավար մարդկանց հետ։ Բայց այդպիսի մարդկանցով չի կարելի հաղթել հափշտակողական պատերազմներում, իսկ առանց տարրական գիտելիքների նրանք չեն կարող աշխատել մեքենաների և դազգյահների վրա։ Փոխադարձ կոնկուրենցիան տեխնիկական պրո-

գրեսի պայմաններում, սպառազինությունների մրցավազքը և այլն մի կողմից, բանվորների և գյուղացիների պայքարը հանուն իրենց կրթության մյուս կողմից, բուրժուազիային հարկադրում է գիտելիքների թեկուզ և փշրանքներ տալ աշխատավորներին, իսկ թալանչիական պատերազմները նրան ստիպում են աշխատավորների մեջ դաստիարակել հաստատակամություն, խիզախություն և բուրժուազիայի համար վըտանգավոր այլ հատկություններ։

Այս հակասություններից չի կարող ազատվել բուրժուական դաստիարակության և ոչ մի սիստեմ։

Եվ ահա, չնայած այս հակասություններին, որոնք, ինչպես ես արդեն ասացի, ընկած են բուրժուական հասարակության հենց բնության մեջ, իշխող դասակարգերը հուսահատ կռիվ են մղում ժողովրդական մասսաներին տիրապետելու համար, օգտագործելով բոլոր միջոցները՝ բացահայտ ճնշումից մինչև նուրբ խաբեությունը։

Աշխատավոր մարդը բուրժուական հասարակության մեջ ծնվելու օրից մինչև մահը գտնվում է իշխող դասակարգին ձեռնտու մտքերի, զգացմունքների, սովորությունների անդուլ ներգործության տակ։ Այդ



կենսագործվում է անհաշիվ կանալներով, երբեմն էլ ընդունելով հազիվ շոշափելի ձևեր։ Եկեղեցին, դպրոցը, արվեստը, մամուլը, կինոն, թատրոնը, զանազան կազմակերպությունները — այս ամենը գործիք են մասսաների գիտակցության մեջ բուրժուական աշխարհայացք, բարոյականություն, սովորություններ և այլն արմատավորելու համար։

Վերցրեք, օրինակ, կինոն։ Մի բուրժուական ռեժիսյոր գրում է ամերիկյան ֆիլմերի մասին։ «Ժամանակակից շատ ֆիլմեր իրենցից ներկայացնում են նարկոտիկ միջոցի նման մի բան, որը նախատեսված է այն աստիճանի հոգնած մարդկանց համար, որ նրանք ուզում են նստել փափուկ բազկաթոռի վրա և կերակրվել ուրիշի ձեռքով»։

Այս է բուրժուական դաստիարակության էությունը։ Սրան, դարերով մշակված դաստիարակությանը, որը նպատակ ունի ամրապնդել կապիտալիստների իշխող դասակարգի դիրքը, հարստահարվողներին հաշտեցնել իրենց դրության հետ, կոմունիստական պարտիան՝ պրոլետարիատի առաջավոր ջոկատը հակադրում է դաստիարակության իր սկզբունքները, որոնք առաջին

հերթին ուղղված են բուրժուազիայի տիրապետության դեմ, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի։

II

Կոմունիստական դաստիարակությունն արմատապես տարբերվում է բուրժուականից ոչ միայն իր խնդիրներով, որը հասկանալի է առանց ապացույցների էլ, այլ և մեթոդներով։ Կոմունիստական դաստիարակությունն անխզելիորեն կապված է մասսաների քաղաքական գիտակցության, ընդհանուր կուլտուրայի զարգացման, ինտելեկտուալ մակարդակի բարձրացման հետ։ Այդ բանին են ձգտում կոմունիստական բոլոր պարտիաները։

Չնայած որ կոմունիստական բոլոր պարտիաների վերջնական նպատակը նույնն է, այնուամենայնիվ, քանի որ բանվոր դասակարգի դրությունը Սովետական Միության մեջ այլ է, քան կապիտալիստական երկրներում, դաստիարակությունը մեզ մոտ պետք է համապատասխանի հենց այդ այլ պայմաններին։ Մեր երկրի բանվոր դասակարգը տիրապետող, ղեկավարող ուժ է հանդիսանում ոչ միայն նյութական, այլ և հոգևոր տեսակետից։

Մարքսը և Էնգելսը գրել են. «Իր տրամադրության տակ նյութական արտադրու-



թյան միջոցներ ունեցող դասակարգը այդ պատճառով էլ ունի և տիրապետում է հոգևոր արտադրության միջոցներին... Իշխող դասակարգը կազմող անհատները, ի միջիայլոց ունեն և գիտակցություն, և այդ պատճառով մտածում են. այն չափով, ինչ չափով նրանք իշխում են որպես դասակարգ և որոշում տվյալ պատմական դարաշրջանը, ամբողջությամբ վերցրած, ինքնըստինքյան հասկանալի է, որ նրանք այդ բանն անում են նրա բոլոր բնագավառներում, նշանակում է, իշխում են նաև որպես մտածողներ, որպես մտքեր արտադրողներ, կանոնավորում են իրենց ժամանակի մտքերի արտադրությունն ու բաշխումը, իսկ այս նշանակում է, որ նրանց մտքերը դարաշրջանի իշխող մտքերն են»։

Այս բանը չի կարելի ասել Սովետական Միության սահմաններից այն կողմը գտնվող բանվոր դասակարգի մասին։

Կոմունիստական դաստիարակությունը մենք միշտ կոնկրետորեն ենք հասկանում։ Մեր պայմաններում նա պետք է ենթարկվի պարտիայի և սովետական պետության առաջ ծառացած խնդիրներին։ Կոմունիստական դաստիարակության հիմնական և գլխավոր խնդիրն է՝ առավելագույն օգնու-

թյուն տալ մեր դասակարգային պայքարին։

Ես տեսնում եմ, որ դուք մի քիչ զարմացած եք, ուզում եք ըմբռնել հետևյալ դրույթը՝ մարդկանց մեջ դաստիարակել ձգտում՝ առավելագույն օգնություն ցույց տալու դասակարգային պայքարին մեր երկրում, որ ոչնչացված են շահագործող դասակարգերը։ Ինձ թվում է, որ այստեղ առանձին պարզաբանումների կարիք չկա։ Բավական է ձեզ հիշեցնել ընկեր Ստալինի կոմերիտական Իվանովին տված հրաշալի պատասխանը։

«...Քանի որ,— գրում էր ընկեր Ստալինը,— մենք ապրում ենք ոչ թե կղզու վրա, այլ այնպիսի «պետությունների սիստեմում», որոնց նշանակալից մասը թշնամաբար է վերաբերվում դեպի սոցիալիզմի երկիրը՝ ստեղծելով ինտերվենցիայի ու ռեստավրացիայի վտանգ, ապա մենք բացահայտորեն ու ազնվորեն ասում ենք, որ սոցիալիզմի հաղթանակը մեր երկրում դեռևս վերջնական չի հանդիսանում»։ Վերջին տարվա իրադարձությունները գործնականում, կոնկրետ փաստերով, հաստատեցին ընկեր Ստալինի այս պատասխանի մեջ շարադրված մտքերը։

Ճիշտ է, մեր դասակարգային պայքարն



ունի այլ ձևեր, քան ՍՍՌՄ սահմաններից դուրս մղվող դասակարգային պայքարը։ Նա, ես կասեի, հասել է բարձրագույն աստիճանի. նրա դրական հետևանքներն ավելի արդյունավետ են։ Սակայն հասկանալի է, որ նա զգալի չափով ավելի բարդ է։

Մարքսի և Էնգելսի այն դրույթը, որ «տիրապետող դասակարգի մտքերը տիրապետող մտքեր են», որչափով նա վերաբերում է Սովետական Միության բանվոր դասակարգին, շատ բանի է մեզ պարտավորեցնում։ Մենք չենք կարող սահմանափակվել բուրժուական իրավակարգի միմիայն քննադատությամբ։ Այժմ գլխավորը պայքարն է հանուն գործնական նվաճումների՝ քաղաքականության, տնտեսության, կուլտուրայի, գիտության, արվեստի և այլնի բոլոր գծերով։ Պարզ է, որ կոմունիստական դաստիարակությունն էլ մեզ մոտ պետք է ընթանա հենց այս ուղղությամբ։

## III

Ի՞նչպիսի խնդիրներ ենք մենք այսօր առաջադրում կոմունիստական դաստիարակության ասպարեզում, որպես հիմնական խնդիրներ։ Եվ, ընդհանրապես ասած, այդ խնդիրներն արդյո՞ք սկզբունքորեն նոր են

այն խնդրի համեմատությամբ, որի մասին Լենինը կոմերիտմիության 3-րդ համագումարում խոսել է 20 տարի առաջ:

Իհարկե, իրադրությունը Սովետական Միության մեջ այդ ժամանակամիջոցում մեծապես փոխվել է: Սակայն ըստ էության կոմունիստական դաստիարակության խնդիրները, որոնք առաջադրել է Լենինը 20 տարի առաջ, ակտուալ են և ներկա ժամանակվա համար:

Չէր խանգարի հաճախակիորեն հիշեցնելու այդ խնդիրները նրանց, ովքեր աշխատում են վերացականորեն վերարտադրել կոմունիստական հասարակության գծերը:

Ապագա մարդու յուրահատուկ գծերի մասին «տեսաբանելու», «խորիմաստությամբ» երազելու այդպիսի սիրահարներ, կոմունիզմը կապելով ինչ-որ անորոշ լավ ապագայի հետ, կոմունիստական դաստիարակության մեջ էլ դնում են այդ վերացականությունը: Ըստ իս, դա գուշակություն է, և ոչ թե ապագայի թափանցում:

Ընկերնե՛ր, կոմունիստական շինարարության կարևորագույն տարրերից մեկը և ՍՍՌՄ աշխատավորների հզոր գործիքը նրանց պայքարում ընդդեմ կապիտալիզմի, աշխատանքի բարձր արտադրողականու-



թյունն է: Լենինն ասել է. «Աշխատանքի արտադրողականությունը, դա, վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար: Կապիտալիզմը ստեղծեց ճորտատիրության ժամանակ չտեսնված աշխատանքի արտադրողականություն: Կապիտալիզմը կարող է վերջնականապես հաղթվել և վերջնականապես կհաղթվի այն բանով, որ սոցիալիզմը ստեղծում է աշխատանքի նոր, չափազանց բարձր արտադրողականություն... Կոմունիզմը կամավոր, գիտակից, համախմբված, առաջավոր տեխնիկան օգտագործող բանվորների աշխատանքի բարձրագույն արտադրողականությունն է՝ կապիտալիստական արտադրողականության դեմ»:

Ահա, ընկերներ, ինչի մասին պետք է մտածել ու խոսել, ահա թե ամենից առաջ ի՛նչ ուղղությամբ պետք է զարգացնել կոմունիստական դաստիարակությունը: Դա պայքարն է հանուն աշխատանքի բարձր արտադրողականության:

Բայց կոմունիստական դաստիարակության այսպիսի դրույթը, գործնական այսպիսի ուղղությունը, մեր մեջ ասած, արդյո՞ք իմ հնարած բանը չէ: Ո՛չ, ընկերներ, դա ինքնահնար բան չէ:

Երբ ես, պատրաստվելով զեկուցում կարդալու, մտքով գծում էի նրա սխեման, դիմեցի հիմնական աղբյուրներին, և առաջին հերթին, մեր Կոնստիտուցիային, որի 12-րդ հոդվածում գրված է. «ՍՍՌՄ-ում աշխատանքը աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունն ու պատվի գործն է՝ համաձայն «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքի»:

ՍՍՌՄ-ում իրագործվում է սոցիալիզմի սկզբունքը՝ «յուրաքանչյուրից՝ ըստ նրա ընդունակության, յուրաքանչյուրին՝ ըստ նրա աշխատանքի»: Իսկ դուք գիտեք, ընկերներ, որ Կոնստիտուցիայի հոդվածները հանդիսանում են քաղաքացիների իրավունքների ու պարտականությունների ոչ միայն իրավաբանական ձևակերպումը, այլև մարդկանց դաստիարակության հզոր գործոն:

Կոնստիտուցիայի այդ հոդվածն ուղղակի խոսում է աշխատանքի վեհության մասին: Դա հասկանալի է: Մեզ մոտ վաղուց, ինչպես նշել է ընկեր Ստալինը — մարդկանց հայացքներում արմատական հեղաշրջում է տեղի ունենում աշխատանքի նկատմամբ: Սոցիալիստական մրցությունը «աշխատանքն ամոթալի ու ծանր բեռից, ինչպիսին նա համարվում էր առաջ, վերածում է պատվի



գործի, փառքի գործի, արիության և հերոսության գործի»: Հենց այս փաստն է իր պայծառ, ստալինյան արտահայտությունը գտել Կոնստիտուցիայում:

Սակայն ինձ կասեն՝ այլ բան է աշխատանքի վեհությունը մեր երկրում, և այլ բան, պայքարը հանուն աշխատանքի բարձր արտադրողականության: Ո՛չ, ընկերներ, այդպես չէ: Աշխատանքի վեհության հարցի հենց մեկնաբանությունն ունի այն իմաստը, որ հարկավոր է ամեն կերպ քաջալերել աշխատանքի արտադրողականության աճը:

Այդ է ամենագլխավորը:

Այդ խնդրին են նվիրված պարտիայի և սովետական կառավարության այնպիսի կարևոր միջոցառումները, ինչպիսին է «Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի» կոչման սահմանումը, ինչպիսիք են «Աշխատանքային Կարմիր Դրոշի» շքանշանի, «Աշխատանքային Արիության Համար» և «Աշխատանքային Գերազանցության Համար» մեդալների սահմանումը: Բացի դրանից, սովետական իշխանությունը և պարտիան աշխատանքում առանձնապես աչքի ընկածներին հաճախ պարգևատրում են գերազանցության այնպիսի բարձր նշանով, ինչպիսին

է «Լենինի շքանշանը» կամ «Կարմիր Աստղ» և «Պատվո Նշան» շքանշանները։

«Սոցիալիստական Աշխատանքի Հերոս» բարձր կոչումը հավասարեցվում է «Սովետական Միության Հերոս» կոչմանը։ Այդ կոչումները, այդ շքանշանները և մեդալները տրվում են ոչ թե պարզապես աշխատանքի համար, ոչ թե պարզապես այն բանի համար, որ մարդն աշխատում է, այլ աշխատանքի արտադրողականության բարձրագույն ցուցանիշների համար, աշխատանքի արտադրողականության համար մղված պայքարում ձեռք բերված հատուկ հաջողությունների համար։

Նույն նպատակին է ծառայում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թվի հունիսի 26-ի Հրամանագիրը։

Արտաքինից կարծեք թե սա ինչ-որ մի լիակատար հակասություն է. մի կողմից «Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի» կոչման շնորհում, պարգևատրում՝ շքանշաններով, սկսած «Լենինի շքանշանով» և վերջացրած մեդալներով, իսկ մյուս կողմից՝ մի Հրամանագիր, որով մտցվում է պատժիչ տարր՝ աշխատանքի կարգապահության ամրապնդման բնագավառում։ Բայց բուն էության այդ միևնույն կարգի



միջոցառումներ են։ Ավելի ճիշտ՝ այդ միջոցառումները ծառայում են միևնույն արդյունքների հասնելուն։

Խրախուսելով և պարգևատրելով սոցիալիստական աշխատանքի լավագույն ներկայացուցիչներին, մի կողմից, պատժելով արտադրության կազմալուծիչներին մյուս կողմից, պարտիան և սովետական կառավարությունը հենց դրանով ցույց են տալիս, թե ինչ ուղղությամբ պետք է տանել ՍՍՌՄ աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը։

Ընկերներ, ձեզանից հավանական է շատերը չեն, որ նախառևոլյուցիոն ժամանակ աշխատել են գործարաններում։ Յուրաքանչյուր տարի մեզ մոտ ավելի ու ավելի են պակասում այդպիսի մարդիկ։ Ուստի պետք է ենթադրել, որ դուք վատ եք իմանում հնում, նախառևոլյուցիոն ժամանակ աշխատանքին ցուցաբերվող վերաբերմունքը։ Եվ, ցավոք սրտի, այդ վերաբերմունքը դեռ հիմնավորապես ծանրացած է մեզ վրա։

Գործարաններում 40 տարի աշխատած ծերունիներին, լավ պրոֆեսիոնալներին, մենք, ռևոլյուցիոներներս, այն ժամանակ առանձնապես չէինք գնահատում։ Սակայն չէ՞ որ նրանք ուղղակի աշխատողներ էին, ի-

րենց գործի գիտակներ, աշխատանքային կարգապահության մարտիկներ, գործալքումներ չէին անում։ Եվ երբ, պատահում էր, գործադուլ էր ծագում, ապա ստիպված էին լինում ուժով նրանց դուրս հանել գործարանից։ Նրանք իրենք չէին համարձակվում դադարեցնել աշխատանքը, վախենալով փչացնել վարչության հետ ունեցած լավ հարաբերությունները։ Մենք հնում չէինք գնահատում այդպիսի բանվորներին։ Ինչո՞ւ։ Որովհետև նրանք աշխատում էին կապիտալիստների համար։

Այլ բան է այժմ— սոցիալիզմի ժամանակ։ Այժմ այդպիսի մարդկանց, որոնք գործարանում աշխատել են 40 տարի, որոնք աշխատանքային կարգապահության տիպար են հանդիսանում, իրենց գործի գիտակներն են և աշխատանքի արտադրողականության բարձր ցուցանիշներ են տալիս,— այդպիսի մարդկանց մենք փառաբանում ենք, պարգևատրում մեդալներով ու շքանշաններով, մեծարում և նվերներ ենք տալիս նրանց, որպես լավագույն սովետական քաղաքացիների։

Ի միջայլոց ահա ձեզ դիալեկտիկայի ակընբախ մի օրինակ։ Նախկինում մենք բացասում էինք այդպիսի վերաբերմունքն աշ-



խատանքի նկատմամբ։ Այժմ մենք «բացասում ենք» այդ «բացասումը»։ Ստացվում է, ինչպես տեսնում եք, «բացասման բացասում», աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի հաստատում։

Ինչո՞ւ համար մենք արմատապես փոխել ենք այդպիսի աշխատողների նկատմամբ ունեցած մեր հայացքը։ Ինչո՞ւ մենք այժմ այդպիսի մարդկանց համարում ենք Սովետական Միության ամենաօգտակար, ամենաարժեքավոր քաղաքացիները։ Նրա համար, որ նրանք կանգնած են իր վարգացման բարձրագույն աստիճանին հասած դասակարգային պայքարի առաջավոր դիրքերում։ Չէ՞ որ դասակարգային պայքարը չի կարելի հասկանալ, որպես միմիայն հրացանը ձեռքին փոտեմարտ ռազմաճակատում։ Ո՛չ, դասակարգային պայքարն այժմ ընթանում է այլ ուղղություններով։ Եվ պայքարը հանուն աշխատանքի բարձրագույն արտադրողականության, դա տվյալ մոմենտին, դասակարգային պայքարի գլխավոր ուղղություններից մեկն է։ Եթե առաջ, մինչև սովետական կարգերը, մարդը լավ էր աշխատում, ապա դրանով նա օբյեկտիվորեն օգնում էր կապիտալիզմին, ավելի էր ամ-

*բացնում իր շղթաները և բանվոր դասակարգի շղթաները։ Իսկ եթե այժմ, սոցիալիստական հասարակության մեջ, մարդը լավ է աշխատում, ապա դրանով նա կանգնում է սոցիալիզմի կողմը և իր նվաճումներով ոչ միայն հարթում է կոմունիզմի ուղին, այլև փշրում է համաշխարհային պրոլետարիատի ստրկության շղթաները։ Նա կոմունիզմի ակտիվ մարտիկն է հանդիսանում։*

*Մեր երկրում մենք արդյո՞ք շատ ենք բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը։ Ես չէի ասի, որ մենք չափազանց մեծ արդյունքների ենք հասել այս ուղղությամբ։ Տեսականորեն համարվում է, որ աշխատանքի սոցիալիստական արտադրողականությունը պետք է մի քանի անգամ անցնի կապիտալիստականից։ Դուք ի՞նչպես եք կարծում, ընկեր Շչերբակով, այս ճիշտ է թե ոչ* (Շչերբակով. «ճիշտ է, ճիշտ է»: Աշխուժություն դահլիճում)։ *Իսկ գործնականորե՞ն։ Իսկ գործնականորեն մենք դեռ չենք անցել Եվրոպայի աշխատանքի բարձրագույն արտադրողականությունից, չխոսելով Ամերիկայի մասին։ Նշանակում է, հարկավոր է շեշտը դնել աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Աշխատանքի արտադրողականության աճը*



*հնարավորություն կտա ավելի պարզորեն տեսնել կոմունիստական ապագա հասարակության ուրվագծերը։*

*Սակայն ընկերներ, աշխատանքի բարձրագույն արտադրողականությունը ոչ միայն արտադրվող մթերքի քանակն է, այլև որակը։ Մեզ մոտ որոշ մարդիկ հակված են կոմունիզմը դիտել վերացականորեն, այդ հասկացողության մեջ չդնելով կոնկրետ բովանդակություն։ Իսկ ի՞նչ է նշանակում կոմունիզմ։ Այդ նշանակում է՝ արտադրել որքան կարելի է ավելի շատ արտադրանք և որքան կարելի է լավագույն որակի։ Ընդսմին, ես նկատի ունեմ ոչ միայն ֆիզիկական, այլև մտավոր աշխատանքի արտադրանքը—ինժեներների, ճարտարապետների, գրողների, ուսուցիչների, բժիշկների, արտիստների, արվեստագետների, նկարիչների, երաժիշտների, երգիչների արտադրանքը և այլն։*

*Հարկավոր է ուղղակի ասել, որ մենք չափազանց դժգոհ ենք մեր շատ մթերքների որակից։ Եվ բնորոշ է այն, որ մեզանից յուրաքանչյուրը հայհոյում է, երբ որևէ անորակ իր է ստանում։*

*Սակայն մենք ինքներս ընդսմին բոլորովին չենք մտածում, թե մեզանից ի՞նչ արտադրանք են ստանում մյուս մարդիկ։ Մի*

խոսքով մեզանից յուրաքանչյուրն ուզում է, որ առատորեն լինի ամեն բան և լավ որակի։ Իսկ ես հարցնում եմ ձեզ՝ ո՞րտեղից վերցնենք այդ, եթե յուրաքանչյուրն իր պոստում աշխատանքի լավագույն ցուցանիշներ չնվաճի։ Հարկավոր է, վերջապես, յուրացնել այն հին ճշմարտությունը, թե՝ ինչ ցանես, այն կքաղես։

Եվ այստեղ, արտադրանքի որակի համար մղվող պայքարում մենք չենք սահմանափակվում միմիայն քաջալերանքի միջոցներով։ Դուք ինչպես գիտեք ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թվի հուլիսի 10-ի Հրամանագրով սահմանված է, որ «անորակ կամ անկոմպլեկտ արդյունաբերական արտադրանքի թողարկումը, կամ պարտադիր ստանդարտները խախտելով արտադրանք թողարկելը վնասարարությանը հավասարազոր հակապետական հանցագործություն է»։ Արդյունաբերական ձեռնարկությունների՝ անորակ կամ անկոմպլեկտ արտադրանք թողարկելու մեջ մեղավոր դիրեկտորները, գլխավոր ինժեներները և տեխնիկական վերահսկողության բաժինների պետերը ենթակա են դատի հանձնվելու, և դատարանի դատավճռով պետք է 5-ից մինչև 8 տարվի բանտարկության ենթարկվեն։



Կարիք չկա ասելու, որ Հրամանագիրը չափազանց ուժեղ կերպով դիպչում է որոշ մարդկանց, ուժեղ կերպով նրանց հարվածում է արտադրանքի անորակության համար։ Բայց դրանով հանդերձ նա ձեռնարկության ղեկավարներին տալիս է ուժեղ զենք շրջապատի անառողջ ազդեցության դեմ մղվող պայքարում։ Սովորաբար ի՞նչպես էին դատում նրանցից շատերը։ Նրանք դատում էին այսպես. դե, մի՞թե արժե սկանդալ սարքել, հարաբերությունները սրել հասարակական կազմակերպությունների, ընկերների հետ և այլն,—զանգվածի հետ կպնա և դեֆեկտավոր իրը։ Եվ գնում էր։ Խոտանի նկատմամբ այդպիսի վերաբերմունքը մեզ մոտ, արտադրության մեջ խորն արմատներ էր արձակում։

Հենց այդ արմատներն է, որ պետք է կտրել, ոչնչացնել։ Այդ անհրաժեշտ է հօգուտ սոցիալիստական հասարակության և մեզանից յուրաքանչյուրի։ Երկուսից մեկը՝ կամ մենք կառուցում ենք կոմունիզմը, կամ մենք մի միայն խոսում ենք կոմունիզմի մասին, իսկ ինքներս դանդաղորեն, եթե կարելի է այսպես ասել, տատանվելով քայլելով և հորանջելով շարժվում ենք դեպի կոմունիզմը։ Բայց ի նկատի ունեցեք, որ դեպի կոմունիզմն այսպես առաջ շարժվելը չափա-

կանց վտանգավոր է, որովհետև կարելի է անհաջին ձգձգել անցումը դեպի կոմունիզմը։

Երբ մարդիկ խոսում են կոմունիզմի մասին և միաժամանակ կոմունիզմն առարկայորեն, նյութականորեն չեն կապում այնպիսի կենսական հարցերի հետ, ինչպիսին է որակի հարցը, ապա նրանք զբաղվում են միմիայն ջուր ծեծելով։

Ինչպես այժմ հիշում եմ,— դա քառասուն տարի, գուցե 39—38 տարի առաջ էր. ինչպես տեսնում եք իմ վաղ ժամանակը պատվում է մոտ 40 տարվա շուրջը (ծիծաղ)։ Մեզ մոտ, ընդհանրապես, մի բանավեճ առաջացավ. ռևոլյուցիոներ բանվորը պարտավո՞ր է թե պարտավոր չէ լավ պատրաստել իրերը՝ այսինքն՝ հոգալ իր արտադրանքի որակի մասին։ Ոմանք ասում էին՝ մենք չենք կարող, օրգանապես չենք կարող մեր ձեռքերով արտադրել վատ իր—դա ճնշում է մեզ, դա ստորացնում է մեր մարդկային արժանապատվությունը։ Մյուսները, ընդհակառակը, ասում էին մեր գործը չէ անհանգստանալ արտադրանքի որակի համար։ Դա կապիտալիստների գործն է։ Չէ որ մենք աշխատում ենք նրանց համար։ Մեկ է, նրանք մեզ կստիպեն իրերը լավ պատրաստել։ Եվ քանի որ կապիտալիստ-



ները մեզ կստիպեն, ասում էին նրանք, մենք էլ լավ իրեր կպատրաստենք։ Իսկ մեր նախաձեռնությունը մենք չպետք է ցուցաբերենք, չպետք է եռանդ ցուցաբերենք։

Ահա, տեսնում եք, ընկերներ, նույնիսկ նախառևոլյուցիոն ժամանակաշրջանում, կապիտալիզմի ժամանակ, կապիտալիստների դեմ պայքարող բանվորների մի մասն այնպես էր նայում գործի վրա, որ չի կարելի վատ իրեր պատրաստել՝ դա ճնշում էր նրանց, ազդում էր նրանց խղճի վրա։ Իսկ մեզ մոտ, սոցիալիստական հասարակության մեջ երբ մենք աշխատում ենք ոչ թե կապիտալիստների, այլ մեզ համար, այդյո՞ք բոլորն են քաշվում, արդյո՞ք բոլորն են աշխատում վատ իրեր չպատրաստել։ Ցավոք սրտի, չի կարելի այս ասել։ Բայց որքան լավ կլիներ, եթե մարդիկ ավելի ամաչեին, եթե նրանք ավելի քաշվեին վատորակ արտադրանք թողարկելու համար։

Եվ երբ մենք խոսում ենք կոմունիստական դաստիարակության մասին, ապա դա նախ և առաջ նշանակում է՝ յուրաքանչյուր աշխատողի գիտակցության մեջ արմատավորել այն միտքը, որ ինքը պետք է թեկուզ և տարրական բարեխղճությամբ վերաբերվի իր աշխատանքին։ Մենք պետք է

նրան ներշնչենք՝ եթե դու քեզ համարում ես բոլշևիկ, կամ պարզապես սովետական ազնիվ քաղաքացի, ապա բարեհաճիր քո իրերը պատրաստել տարրական բարեխղճությամբ, որպեսզի նրանք պետքական լինեն որակի տեսակետից։

Եվ այսպես, պայքարը կոմունիզմի համար՝ պայքար է աշխատանքի բարձրագույն արտադրողականության համար, ինչպես արտադրանքի քանակի իմաստով, այնպես էլ որակի։ Ահա ՍՍՌՄ աշխատավորների կոմունիստական դաստիարակության առաջին հիմնական դրույթը։

IV

Ընկերներ, Միության Կոնստիտուցիայի 131-րդ Հոդվածում ասված է. «ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է պահպանել և ամրապնդել հանրային, սոցիալիստական սեփականությունը, որպես սովետական կարգերի սրբազան ու անձեռնմխելի հիմք, որպես հայրենիքի հարստության ու հզորության աղբյուր, որպես բոլոր աշխատավորների ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուր։

Հանրային, սոցիալիստական սեփականության դեմ ոտնձգություն անող անձերը ժողովրդի թշնամիներ են»։

Պահպանել և ամրապնդել հանրային սե-



փականությունը — այս հարցն իր ներքին նշանակությամբ ավելի մեծ հարց է, քան թվում է արտաքնապես։ Խնայողությունը հանրային սեփականության նկատմամբ՝ կոմունիստական գիծ է։ Ինձ թվում է, որ մարդկության պատմության մեջ չի եղել ավելի խնայողասեր հասարակություն, քան կոմունիստականը։ Այդ միանգամայն բնական է. չէ՞ որ միջոցների տնօրինումը, նրանց ծախսումը մի միայն կոմունիստական հասարակության մեջ է գտնվում արտադրողների ձեռքին։ Ես կարծում եմ հարկ չկա ապացուցելու, որ արտադրողը ծախսելու մեջ ավելի խնայող է, քան շահագործողը կամ ուրիշի բարիքի հափշտակիչը։

Պատմությունը մարդկանց չէր սովորեցնում խնայել հանրային սեփականությունը, իսկ այդ սեփականությունը հափշտակելու սիրահարներ միշտ էլ եղել են բավական քանակությամբ։ Գանձագողությունը կառավարման նախկին սիստեմի բնորոշ գիծն էր, իսկ գանձը կաթնատու կով էր չինովնիկների համար։ Հասկանալի է, որ այդպիսի կարգերն անհոգություն, շռայլություն էին զարգացնում նաև անձնական գույքի նկատմամբ, իսկ արհամարհանքը հանրային գույքի նկատմամբ՝ գոյություն ուներ վերևից մինչև ներքև։

Սակայն ժողովրդական ունեցվածքի, մարդկային աշխատանքի այդ հափշտակումը, որ մենք նկատում էինք անցյալում, ոչ ավելին է՝ քան մանկական մի չարաճճիություն այն բանի համեմատությամբ, թե ինչպես ժամանակակից կապիտալիստական հասարակության մեջ հափշտակվում է մարդկային աշխատանքը։ Կարելի է համարձակորեն ասել, որ այժմ յուրաքանչյուր օր օդ են հանվում միլիոնավոր աշխօրեր՝ անցյալի աշխատանքը ոչնչացնելու համար։ Իսկ երկրի վրա սահմանափակ քանակությամբ գտնվող ինչքա՜ն արժեքավորագույն բնական պարգևներ են ոչնչացվում։ Մարդկության հանդեպ կատարած միմիայն այս հանցագործության համար կապիտալիզմն արժանի է շուտափույթ ոչնչացման։

Խնայողությունը պետական արտադրության ընդհանուր բալանսում ժողովրդական ունեցվածքի պլյուսների մասն է հանդիսանում։ Եվ այդ մասը պետք է յուրաքանչյուր տարի աճի, որպես մեր կուլտուրականության բարձրացման արդյունք։

Ընկերնե՛ր, Կոնստիտուցիայի 131-րդ հոդվածն ամենահարուստ նյութ է տալիս կոմունիստական դաստիարակության համար։ Նա ուղղված է բուրժուական հայացքի դեմ՝



տունը իմն է — էլ ուրիշ բան չեմ ուզում իմանալ, իմ տամբապատարանին թույլ չեմ տա մարդու մոտենալ»։ Նա պարտավորեցնում է խնայել հանրային սեփականությունը, ընդհանուր շահերը բարձր է դասում անձնականից, անհատական շահերից, որովհետև միմիայն կոլեկտիվում, սոցիալիստական հասարակության մեջ է իրոք ապահովվում յուրաքանչյուրի դրությունը։

Լենինը դեռ սովետական իշխանության գոյության առաջին տարում ասում էր. «Ճշտապահորեն և բարեխղճորեն կատարիր փողերի հաշիվը, խնայողությամբ տնտեսավարիր, ծուլություն մի արա, մի գողանա, աշխատանքային խստագույն կարգապահություն պահպանիր,— հենց այս լոզունգները, որոնք իրավացիորեն ծաղրվում էին ռևոլյուցիոն պրոլետարների կողմից այն ժամանակ, երբ բուրժուազիան նման ճառերով քողարկում էր իր տիրապետությունը, որպես շահագործողների դասակարգի, այժմ, բուրժուազիայի տապալումից հետո, դառնում են մոմենտի հերթական և գլխավոր լոզունգները»։

Ինչ վերաբերում է գողերին, հանրային սեփականությունը հափշտակողներին, ժուլիկներին և «կապիտալիզմի տրադիցիաները

պաշտպանող» նման մարդկանց, ապա նրանց դեմ մենք պետք է ուղղենք պատժիչ միջոցառումներ։ Մասնավորապես այդ նպատակին են ծառայում ՍՍՌՄ Կենտգործկոմի և Ժողկոմսովետի 1932 թվի օգոստոսի 7-ի որոշումը՝ «Պետական ձեռնարկությունների, կոլտնտեսությունների և կոոպերացիայի գույքը պաշտպանելու և հանրային (սոցիալիստական) սեփականությունն ամրապնդելու մասին» և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թվի օգոստոսի 10-ի հրամանագիրը՝ «Արտադրության մեջ փոքր գողություններ կատարելու և խուլիգանության համար քրեական պատասխանատվության ենթարկելու մասին»։

Եվ այսպես, ընկերներ, մենք պետք է նախ սովորենք աշխատել ըստ ընդունակությունների, սովորենք պահպանել հանրային բարիքը, իսկ երբ մենք բավականաչափ կաշխատենք և կսովորենք խնայել վաստակածը, այդ ժամանակ ամեն բան կբաշխենք ըստ պահանջների։

Սա կոմունիստական դաստիարակության երկրորդ բաղկացուցիչ մասն է։

V

Կոմունիստական դաստիարակության բաղկացուցիչ անհրաժեշտ տարրն է հանդիսանում նաև հայրենիքի նկատմամբ, սոցիա-



լիստական հայրենիքի նկատմամբ սիրո զարգացումը սովետական հայրենասիրության զարգացումը։

«Հայրենասիրություն» բառն առաջին անգամ երևան եկավ ֆրանսիական 1789—93 թվերի ռևոլյուցիայի ժամանակաշրջանում։ Այն ժամանակ իրենց հայրենասերներ էին անվանում ժողովրդական գործի համար պայքարող մարտիկները, ռեսպուբլիկայի պաշտպանները՝ ի հակակշիռ դավաճանների, հայրենիքի մատնիչների՝ միապետականների բանակից։ Բայց հետո այդ տերմինը ռեակցիոներները և իշխող վերնախավերը օգտագործեցին իրենց շահամոլական նպատակներով։ Ուստի «հայրենասիրություն» բառին ինչպես Եվրոպայում, այնպես և ցարական Ռուսաստանում առավել ազնիվ մարդիկ, որոնք անհանգստանում էին ժողովրդական կարիքների համար միշտ, կասկածանքով էին վերաբերվում, նրա մեջ դիտելով ազգային շովինիզմ, իշխող վերնախավերի անհիմն մեծամտություն։ Վերջապես, ցարական սատրապները այդ դրոշով թալանում էին միակցվող ժողովուրդներին։

«Հայրենասիրության» մենաշնորհը հափշտակեցին սև հարյուրակայինները, ո-

րոնք իրենց «հայրենասիրական զգացմունքները» ցուցադրում էին փողոցային ջարդերով, բանվորներին, ինտելիգենտներին, հրեաներին ծեծելով։ Եվ ընդհանրապես այն ժամանակ «հայրենասիրությանը» կպչում էին ամեն տեսակ շատ մութ, ավանտյուրիստ տարրեր՝ հասարակության տականքներից։

Ժողովրդի աչքում կեղտոտվեց «հայրենասիրություն» բառը։ Ազնիվ մարդը չէր կարող իրեն դասել «հայրենասերների» կարգը։

Ռուսաստանին միացված, չինովնիկների և գաղութարարների կողմից յուրաքանչյուր քայլում ճնշված, շահագործված, պլոկված և վիրավորված ժողովուրդները, բնականաբար, ատում էին ռուսական պետությունը։

Կարծես թե ի հակակշիռ մտրակի և նագայկայի ասպետների «հայրենասիրության»՝ ավելի ու ավելի աճող թափով ընթանում էր առաջադիմական շարժումը, որն իր սուր ծայրով ուղղված էր ինքնակալության դեմ։

Առաջադիմական ուժերի պայքարը ռեակցիայի դեմ համակեց սկզբում գրականությանը, արվեստին, նկարչությանը, որտեղ, ծայրահեղ դեպքում, կարելի էր ակնարկներով արտահայտել իր բացասական վերա-



բերմունքն այն ժամանակվա իրականության նկատմամբ։ Որոշ ժամանակ անց այդ պայքարի մեջ սկսեցին աստիճանաբար քաշվել բնակչության դեմոկրատական խավերը, որի շնորհիվ նա ավելի ու ավելի արմատական բնույթ էր ստանում։

Այդ պրոցեսն աճեցնում և համախմբում էր ինքնակալության հակառակորդներին, այսպես կոչված պաշտոնական Ռուսաստանի հակառակորդներին։ Միաժամանակ նա ստեղծում էր մեծ ժողովրդի ազգային պատվարը՝ հանձինս նրա լավագույն ներկայացուցիչների։ Երևան եկավ հանճարեղ և շնորհալի գրողների, քննադատների, հրապարակախոսների մի ամբողջ պլեադա, որոնք մեծապես բարձրացրին և փառաբանեցին մեր գրականությունը, նրան դարձրին համաշխարհային գրականություն։ Եվ ոչ միայն գրականությունը, այլև ռուսական երաժշտությունը, նկարչությունը, գիտությունն սկսեցին առաջադրել իրենց փայլուն ներկայացուցիչներին, որպես ազգային կուլտուրայի իսկական հայրենասերների։

Այդ մարդիկ, որոնք թանկ էին գնահատում իրենց պատիվը, մարդկային արժանապատվությունը և հասարակական համ-

քամը, վճռականորեն սահմանադծվում էին պաշտոնական, թթված «հայրենասիրությունից»։ Նրանց համար ամենից բարձր էր ծառայությունն իրենց ժողովրդին և նրա մեջ իսկական հայրենասիրություն արթնացնելը։ Հանուն այդ մեծ նպատակի նրանք չէին խնայում իրենց ուժերն ու քանքարը։ Նրանցից սովորում, նրանց օրինակը ժառանգում և բարձր հայրենասիրությամբ վարակվում էին ժամանակակիցները և հետագա սերունդները։ Այդ մարդկանց խորապես հայրենասիրական գործունեությունը ոչ քիչ թիվով պայծառ ու գրավիչ էջեր է կազմում ռուս ժողովրդի պատմության մեջ։ Եվ եթե նրանք չէին վայելում պաշտոնական Ռուսաստանի համակրանքը, ապա ժողովուրդն ընդհակառակը, պատշաճ հարգանք էր տալիս նրանց, միշտ հարգել և հարգելու է նրանց պայծառ հիշատակը։

Պրոգրեսիվ ուժերի՝ ռեակցիոն ուժերի դեմ մղած պայքարի այդ պրոցեսը, կուլտուրական ուժերի աճման և կոնսոլիդացիայի այդ պրոցեսը, ծայրահեղ դեպքում հնարավորություն տվեց ճնշված ազգությունների առավել գիտակից տարրերին տեսնելու մի այլ Ռուսաստան—ազնիվ, ազատասեր, անճնշում, կուլտուրական, տա-



ղանդավոր Ռուսաստանը, որն աջակցում է գիտելիքների զարգացմանը բնակչության լայն մասսաների շրջանում։

Բանվորական ռևոլյուցիոն ծավալուն շարժումը, որպես ակտուալ հարց, հերթի դրեց Ռուսաստանի կայսրության բոլոր ազգությունների պրոլետարների և աշխատավորների իսկական համախմբումը նրանց պայքարում՝ ընդդեմ ցարիզմի և կապիտալիզմի։ Լենինի և Ստալինի ջանքերը բանվոր դասակարգի համառուսաստանյան պարտիա ստեղծելու ուղղությամբ, առանց որի անհնարին էր ռուս ժողովրդի և ճնշված ազգությունների ազատագրությունը, լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության անդուլ պրոպագանդան, բոլշևիկների պայքարն ընդդեմ մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի ամեն տեսակ արտահայտությունների, այս ամենը ճնշված ազգություններին մոտեցնում էր ռուս ժողովրդին, ստիպում էր նրանց առավել գիտակից տարրերին՝ ծանոթանալ ռուս գրականության, արվեստի, գիտության, ռուս ռևոլյուցիոն մարտիկների հետ և հենց դրանով նրանց հաղորդակից էր դարձնում ռուսական կուլտուրային, նրանց դարձնում էր ընդհանուր, միաձույլ պայքարի կողմ-

նակիցներ, այսինքն համառուսաստանյան մտածող մարդիկ։

Սովետական հայրենասիրության քարոզը չի կարող կտրված լինել, չկապվել մեր ժողովրդի անցյալի պատմության արմատների հետ։ Նա պետք է հայրենասիրական հպարտությամբ լցված լինի հանուն իր ժողովրդի քաջագործությունների։ Չէ՞ որ սովետական հայրենասիրությունն ուղղակի ժառանգն է մեր ժողովրդի զարգացման գործն առաջ մղած նախահայրերի ստեղծագործական ուժերի։

Սովետական կյանքը զարմանալի պայծառությամբ պատկերում է այդ։ Բավական է մատնացույց անել թեկուզ և մի փաստ. ինչպիսի հիացմունքով ազատագրված ժողովուրդները հիշողության մեջ վերակենդանացնում են իրենց էպիքական և պատմական հերոսների կերպարները։ Նրանք այդ հերոսներին պատկերում են իրենց լավագույն գեղարվեստական երկերում, որոնք ցուցադրելու համար տանում են Մոսկվա՝ սովետական ռեսպուբլիկաների սիրտը, ուր նրանցից ամեն մեկը կարծես թե ուզում է ասել ՍՍՌՄ բոլոր ժողովուրդներին.— նայեցեք, ես ժողովուրդների Մեծ Միության անդամն եմ հանդիսանում ոչ թե որ-



պես մեկի գթասրտությամբ, ես անցեղ և անսերունդ մարդ չեմ— ահա իմ սերունդը, որով հպարտանում եմ ես և ուզում եմ որ դուք էլ, իմ աշխատանքային և մարդկության լավագույն գաղափարի պաշտպանության եղբայրները, հիանաք իմ սերնդով։

Նշանակում է սովետական հայրենասիրությունը սկիզբ է առնում խորն անցյալից, սկսած ժողովրդական էպոսից, նա ներծծում է ժողովրդի ստեղծած բոլոր լավագույն ստեղծագործությունները և մեծագույն պատիվ է համարում պահպանել նրա բոլոր նվաճումները։

Պրոլետարական մեծ ռևոլյուցիան ոչ միայն հսկայական խորտակումներ գործեց, այլև ստեղծագործական չտեսնված աշխատանքի սկիզբը դրեց։

Դրանով հանդերձ նա հզոր փոթորկի պես մաքրեց տասնյակ միլիոնավոր մարդկանց գլուխները, նրանց մեջ ամրապնդելով կայտառություն և հավատ՝ սեփական ուժերի նկատմամբ։ Այժմ նրանք իրենց դյուցազուններ են զգում, որոնք ընդունակ են հաղթելու աշխատավոր մասսաների թշնամական ամբողջ աշխարհը։

Եվ ահա առաջացավ սովետական էպոսը, որը վերամիավորեց հնավոր անցյալի և

մեր դարաշրջանի ժողովրդական ստեղծագործության գիծը, որ կտրել էր կապիտալիզմը, որը թշնամի է հոգևոր արտադրության այդ ճյուղին։ Հասարակության սոցիալիստական վերափոխման ծավալուն պրոցեսն առաջ քաշեց մեծ արվեստագետների վրձինին վայել բազմաթիվ հարուստ ու գրավիչ թեմաներ։ Ժողովուրդն արդեն այդ թեմաներից ընտրում է լավագույն հատիկներ և աստիճանաբար առանձին ուրվագծեր է ստեղծում էպիկական-հերոսական պոեմների համար մեծ դարաշրջանի և նրա մեծ հերոսների մասին, ինչպիսիք են Լենինը և Ստալինը։

Ժողովրդից չպետք է հետ մնան մեր տաղանդավոր գրականագետները և արվեստագետները։ Չէ որ դեռ երբեք նրանց համար չի եղել այնքան և այնպիսի շնորհակալ նյութ, ինչպես մեր դարաշրջանում։ Միմիայն այժմ նրանք անսահման հնարավորություն ունեն ծառայելու իրենց ժողովրդին և մասսաների մեջ արմատավորելու հայրենասիրական խոր զգացմունքներ ժամանակակից սերունդների մեծ գործերի հիման վրա։

Ինձ թվում է, որ սովետական ժողովրդին ծառայելու հոյակապ օրինակ է հան-



դիսանում Մայակովսկին։ Նա իրեն համարում է ռևոլյուցիայի մարտիկը, և այդպիսին էր ըստ իր ստեղծագործության էության։ Նա ձգտում էր ռևոլյուցիոն ժողովրդի հետ ձուլել իր երկերի ոչ միայն բովանդակությունը, այլև ձևը, այնպես, որ ապագա պատմաբանները, անշուշտ, կասեն՝ նրա ստեղծագործությունները պատկանում են մարդկային հարաբերությունների բեկման մեծ դարաշրջանին։ Ուստի ես գտնում եմ, որ Մայակովսկին իրավունք ուներ, դիմելով ապագա սերունդներին, ասել՝

«Ես ձեզ մոտ կգամ—
կոմունիստական հեռուն,
ոչ այնպես,
ինչպես երգային-եսենինյան
ապետացում։
Ոտանավորն իմ կհասնի դարերի
լեռնաշղթաները կտրելով,
կհասնի պոետների
և իշխանությունների գլխի վրայով։
Իմ ոտանավորը կհասնի,
բայց կհասնի ոչ թե այնպես,
ինչպես նետը՝
սիրա— քնարային որսի պահին,
ինչպես դրամահավաքին
մաշված շահանոցն է հասնում։

ինչպես լույսն է հասնում
խամրած աստղերի։
Ոտանավորըն իմ
տքնությամբ
կպատռի տարիների հսկա լեռը,
եվ կգա
ծանրակշիռ,
կոպիտ,
տեսանելի,
ինչպես ջրմուղն հասավ
մեր օրերը,
որ կառուցել էին
դեռ ստրուկները Հռոմի»։

Այս հպարտ հավատարմության մեջ մենք լսում ենք մեր դարաշրջանի, նոր սկզբունքներով աշխարհը վերափոխող մեր սերունդների վսեմ ձայնը։

Ընկերնե՛ր, պատմությունը, մեր վրա դրել է պատասխանատու և պատվավոր մի խնդիր՝ մեր դասակարգային պայքարը հասցնել կոմունիզմի լիակատար հաղթության։ «Մենք պետք է առաջ շարժվենք այնպես, որպեսզի ամբողջ աշխարհի բանվոր դասակարգը, նայելով մեզ, կարողանա ասել՝ ահա նա, իմ առաջավոր ջոկատը, ահա նա, իմ հարվածային բրիգադը, ահա



նա, իմ բանվորական իշխանությունը, ահա նա, իմ հայրենիքը...» (Ստալին)։

Իսկ այդ բանի համար մենք պետք է ՍՍՌՄ բոլոր աշխատավորներին դաստիարակենք բոցավառ հայրենասիրության ոգով, հայրենիքի նկատմամբ անսահման սիրո ոգով։ Ես խոսում եմ ոչ թե վերացական, ոչ թե պլատոնական սիրո մասին, այլ հաստատակամ, ակտիվ, կրքոտ, անզուսպ սիրո մասին, այնպիսի սիրո, որը ոչ մի խնայում չգիտի թշնամիների նկատմամբ, որը հանուն հայրենիքի կանգ չի առնում ոչ մի զոհողության առաջ։

Ահա ձեզ ՍՍՌՄ աշխատավորների կոմունիստական դաստիարակության երրորդ հիմնական խնդիրը։

VI

Անհրաժեշտ եմ համարում կանգ առնել նաև կոլեկտիվայնության հարցի վրա։ Չպետք է առանձնապես ապացուցել, որ կոլեկտիվայնության ներդրումը պետք է զգալի տեղ գրավի կոմունիստական դաստիարակության մեջ։ Ես այստեղ նկատի ունեմ ոչ թե կոլեկտիվիզմի տեսական հիմունքները, այլ հասարակական սովորույթների ներդրումն արտադրության մեջ, կենցաղում, կյանքում, ստեղծումն այնպիսի պայմանների, որոնց ժամանակ կոլեկտիվայնությունը կազմեր մեր

սովորույթների, վարքի նորմաների անխզելի մասը, որպեսզի այդ գործողությունները կատարվեին ոչ միայն ծանրակշռված, գիտակցորեն, այլ բղխեին բնազդորեն, օրգանապես։

Ես խոսում եմ ժողովրդի մեջ այդպիսի սովորությունները գիտակցորեն մշակելու մասին։

Կոլեկտիվայնության հասկացողությունը չի կարելի շփոթել հոտայնության հասկացողության հետ։ Օրինակ, երբ անցյալում գյուղացիները խմբով ծեծում էին ձիագողին, կամ երբ անանկացած բանկի ավանդատուների ամբոխը, մոլեգնելով, ջարդում էր բանկի ապակիները,— իմ կարծիքով, այդպիսի գործողությունները չի կարելի կոլեկտիվայնության երևույթ համարել։ Նրանք հոտայնության բնույթ են կրում, իսկ կոլեկտիվայնությունը ենթադրում է գործողության նպատակահարմարություն։

Կոլեկտիվայնությունը մեր հասարակության գործնական կյանքում մեծ դեր է խաղում, որովհետև նա խարսխվում է կոլեկտիվիզմի բազայի վրա։ Մենք կապիտալիստական հասարակությանը հակադրում ենք կոլեկտիվիզմ— կոմունիզմը, համոզված լինելով նրա միթիարի գերազանցության մեջ։ Ար-



տադրության, հասարակական կյանքում և կենցաղում կոլեկտիվ սովորությունները ներդնելու հաջողությունից մեծապես կախված է կոմունիստական շինարարության հաջողությունը։

Աշխատանքի կոլեկտիվայնությունը, նրա կոոպերացումն արտադրության հիմքն է։ Սոցիալիստական արդյունաբերության մեջ դա առանձին ապացույցներ չի պահանջում։ Այստեղ այդ իր ակնբախությամբ հասկանալի է բանվորներին և բոլոր նրանց, ովքեր կապված են ֆաբրիկային արտադրության հետ։ Եթե կապիտալիստական հասարակության մեջ առանձին պրոլետարի աշխատանքը միանգամայն դիմազրկվում է և, իրացվելով առարկայի մեջ, դուրս է ընկնում ոչ միայն բանվորի, այլև գործարանատիրոջ տեսադաշտից, որին հետաքրքրում է միմիայն շահույթը, ապա մեզ մոտ իրացված աշխատանքը բանվորի աչքի առջև է։ Այդ ցուցադրվում է ոչ միայն արտադրության տեղում, այլև սպառման, օգտագործման մեջ։ Նշանակում է, արտադրողը միջին աշալրջության դեպքում կարող է տեսնել իր աշխատանքի արդյունքները։ Սակայն մենք պետք է մեր դաստիարակչական աշխատանքով ընդլայնենք և խորաց-

նենք յուրաքանչյուր աշխատողի՝ հասարակության հանդեպ, կոլեկտիվ աշխատանքի մեջ ունեցած իր անհատական մասնակցության ըմբռնումը։

Բայց առանձնապես անհրաժեշտ է ուշադրություն դարձնել կոլեկտիվայնության դաստիարակության վրա՝ գյուղում, կոլտնտեսային գյուղում։ Նա կոլեկտիվայնության լուրջ դպրոց է անցնում դրեթե բոլորովին չունենալով կոլեկտիվ աշխատանքի հմտություններ։ Չնայած որ անցյալում «համայնք», «համայնքի շահերը» բառերը երբեմն արտասանվում էին գյուղական ժողովներում, բայց ըստ էության կոլեկտիվային ոչ մի բան չկար այստեղ։ «Համայքի շահերը», «համայնք» խոսքերով սարքվում էին կուլակների անձնական գործերը։

Կոլեկտիվացման ուղու վրա կանգնելով, գյուղացիության առաջ ծառացան բարդ խնդիրներ՝ ամբողջ անցյալին հակառակ բեկել, ավելի ճիշտ՝ հակառակ կողմն ուղղել իր հոգեբանությունը, իր համար աշխատելուց անցնել բոլորի համար աշխատելու։ Այդ պրոցեսը հեշտ պրոցես չէ։ Եվ նա հաջողությամբ կարողացավ զարգանալ միմիայն զգալի ներգործությամբ և պետության օգնությամբ։



Անցումն անհատական, պարզ աշխատանքից դեպի կոլեկտիվ, ավելի բարձր և ավելի բարդ աշխատանքի, մարդկանցից պահանջում է ավելի մեծ կազմակերպչական ընդունակություններ։ Եվ ահա, հին սեփականատիրական հակումները վերացնելու և կոլտնտեսային գյուղացիների մոտ կոլեկտիվիստական հակումներ կուտակելուն զուգընթաց տեղի է ունենում կազմակերպչական փորձի կուտակումը՝ աշխատանքի կոլեկտիվ մեթոդներ կիրառելու գործում։

Ահա թե ինչպիսի պայմաններում է ընթանում կոմունիստական դաստիարակությունը գյուղում։

Պարզ է, որ կոլեկտիվայնության միայն կոչը, միայն ագիտացիան՝ հանուն նրա առավելությունների՝ անհատական աշխատանքի հանդեպ, արդեն բավական չէ։ Պրոպագանդիստը, ագիտատորը, դաստիարակը պետք է կոլտնտեսականներին մատնացույց անեն աշխատանքի առավել արդյունավետ եղանակները, ծայրահեղ դեպքում կոնկրետ օրինակներ բերեն արդյունավետ աշխատանքից՝ վերլուծելով նրա արդյունավետության պատճառները։

Այսպիսով, նույնիսկ մի այնպիսի բարդ, գործ, ինչպիսին է կոլեկտիվայնության դաս-

տիարակությունը, որպեսզի առավել էֆեկտավոր լինի, պետք է հարմարվի գործնական աշխատանքին։ Այլ կերպ ասած, կոլեկտիվայնության դաստիարակումը պետք է կոնկրետորեն տարվի։ Պարզաբանելով այս կամ այն գործնական պրոցեսի իմաստը, դաստիարակը միաժամանակ ինքն է հարստանում գործնական նյութով իր սեփական տեսական զարգացման համար։ Ի միջիայլոց այդ կարող է տեսության և պրակտիկայի միասնության ակնբախ օրինակ ծառայել։

Ահա ձեզ կոմունիստական դաստիարակության չորրորդ տարրը։

VII

Յուրաքանչյուր դրական աշխատանքի արդասավոր գործոնը կուլտուրականությունն է։ Որքան բարդ, որակյալ է աշխատանքը, այնքան մեծ կուլտուրականություն է պահանջվում։ Կուլտուրան մեզ հարկավոր է օդի պես, նրա ամբողջ լայն դիապազոնով, այսինքն՝ տարրականից, տառացի կերպով յուրաքանչյուր մարդուն անհրաժեշտ կուլտուրայից մինչև այսպես կոչված մեծ կուլտուրան։ Ասում են, որ այս մարդը մեծ կուլտուրայի տեր է։

Կուլտուրականությունը մարդու զարգացման աստիճանի որոշ ցուցանիշն է։ Իսկ



որովհետև զարգացած մարդը մեծ ուշադրություն է գրավում, ապա նրանք ընդօրինակում են կուլտուրականության արտաքին կողմերը։ Այդպիսի մարդկանց մասին սովորաբար ասում են՝ ագռավը սիրամարգի փետուրներով է զարդարվել։ Սակայն իմ կարծիքով, այդպիսի դատողությունը ճիշտ չէ, վնասակար է կուլտուրայի զարգացման համար։ Հասկանալի է, որ մեծ մասամբ մարդիկ նախ վերցնում են արտաքին կողմը։ Բայց որքան մարդն աշխատում է ձեռք բերել կուլտուրականության արտաքին կողմերը, այնքան նրանք իրենց հերթին ազդում են արդեն նրա ընդհանուր կուլտուրայի բարձրացման վրա։

Ի՞նչու համար առանձնապես այժմ սուր կերպով է զգացվում ընդհանուր կուլտուրականությունը բարձրացնելու անհրաժեշտությունը։ Սովետական իրավակարգի գոյության 23 տարվա ընթացքում մեր տնտեսությունը չափազանց առաջ է խաղացել։ Արտադրության տեխնիկական մակարդակն ահագին բարձրացրել է, մեքենաները, դազգյահները բարդացել են և ավելի ուշադիր, կուլտուրական վերաբերմունք են պահանջում։ Եթե մենք քննենք արդյունաբերության ճյուղերը մեկը մյուսի հետևից,

ապա կգանք այսպիսի ընդհանուր եզրակացության. մեզ անհրաժեշտ են ավելի կուլտուրական մարդիկ, քան առաջ։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ համապատասխան կերպով պահանջները բարձրացել են նաև հիմնարկներում։

Կոլտնտեսային գյուղն իր հերթին բարձր կուլտուրայի տեր մարդկանց հսկայական պահանջ է ներկայացնում։ Տրակտորիստը, կոմբայնավարը, ագրոնոմը, զոոտեխնիկը, իր անմիջական աշխատանքն իմանալուց բացի, պարտավոր է ունենալ թեկուզ տարրական կուլտուրականություն։ Վերցնենք մյուս պրոֆեսիաները, թեկուզ և ձիապանին։ Համեմատաբար դժվար չէ գյուղացուն մեկ-երկու ձիու ձիապան դառնալ։ Իսկ երբ ախոռում կան 20—40 ձի, ապա այստեղ պահանջվում է կազմակերպչական փորձ և կուլտուրականություն։ Այսպես է կոլտնտեսային տնտեսության բոլոր բնագավառներում։ Առաջ շարժվելու համար հարկավոր է կուլտուրա։

Չի խանգարի նաև հիշեցնել երկրի պաշտպանության կարիքների մասին։ Այստեղ կուլտուրականության պահանջներն աճում են ո՛չ թե օրերով, այլ ժամերով։

Բացի այս բոլորից, կուլտուրականությունը մաքրասիրություն է արտադրության



մեջ և կենցաղում։

Պատկերացրեք, ընկերներ, ինժեների, լավ ինժեների։ Նա շատ է սովորել, կրթված մարդ է, գործարան է ղեկավարում, արժեքավոր աշխատող է համարվում։ Իսկ երբ մտնում ես նրա մոտ, գործարան, ապա սատանան էլ վոտքը կկոտրի (ծիծաղ)։ Բայց մի՞թե դա կուլտուրականություն է։ Եթե այդպիսի ինժեները չի նկատում այդ, նշանակում է նա դեռ տարրական կուլտուրականություն չունի։ Նշանակում է նա, ինչպես հարկն է, չի ցավում իր գործարանի համար, իր արտադրության համար։

Ես կուլտուրականության համար մղվող պայքարը հասկանում եմ այս բառի ամենալայն իմաստով, որպեսզի, օրինակ, ծորակից ջուր չկաթի, որպեսզի Մոսկվայում ավելի քիչ փայտոջիլներ լինեն բնակարաններում և այլն։ Փայտոջիլներն անհանդուրժելի բան են, խայտառակություն են։

Իսկ մարդիկ այդ ժամանակ հարց են տալիս՝ ի՞նչպիսին պետք է լինի կոմունիզմի ժամանակի մարդը, ի՞նչպիսի հատկություններով է նա աչքի ընկնելու (ծիծաղ)։ Մարդիկ մեծախոսում են երեխաների դաստիարակության մասին, իսկ իրենց սենյակում փայտոջլանոց են սարքել։ Դե, ի՞նչ բան է այս։ Մի՞թե նրանք կուլտուրական

*մարդիկ են։ Նրանք ազնվական ալարկոտներ են, որ մնացել են ռուս հին հասարակությունից* (ծիծաղ)։

***

*Ընկերնե՛ր, կարելի էր կանգ առնել կոմունիստական դաստիարակության մի ամբողջ շարք հարցերի վրա, ինչպես օրինակ՝ պարտիայի, պրոֆմիությունների, կոմերիտմիության, սպորտային ընկերությունների, ԲՈՒՀ-երի, դպրոցի, գրականության, արվեստի, կինոյի, թատրոնի, ընտանիքի դերի վրա և այլն։ Բայց այդ մեզ չափազանց հեռուն կտաներ, և մենք մեր տեսադաշտից աչքաթող կանեինք ամենագլխավորը, որը որոշում է ՍՍՌՄ աշխատավորների կոմունիստական դաստիարակության խնդիրները և բովանդակությունը դասակարգային պայքարի տվյալ էտապում։*

*Ես գտնում եմ, որ այն հիմնական ուղենիշերը, որոնց մասին խոսվեց, պետք է որոշեն այդ գործով զբաղվող մեր բոլոր կազմակերպությունների և հիմնարկների, բոլոր աշխատողների մոտեցումը կոմունիստական դաստիարակությանը։ Գործնական ամեն մի հարց նրանք պետք է լուծեն կոմունիստական դաստիարակության գլխավոր բովանդակության և հիմնական նպատակի տեսակետից։*



*Եթե մեր դաստիարակությունն արտաքնապես լինի հոյակապ, բայց վերացական, այսինքն եթե նա առարկայական, նյութական ձևով կապված չլինի այն պայքարի հետ, որը մղվում է սոցիալիստական պետության հետագա աճման և նրա դիրքի ամրապնդման համար այժմյան դասակարգային պայքարում, ապա դա կլինի դաստիարակության պարոդիա։*

*Այժմյան միջազգային բարդ իրադրության մեջ մեր ժողովուրդը պետք է լինի առանձնապես հավաքական, զգաստ և լարված՝ իր աչալրջությամբ, որպեսզի մեր սոցիալիստական պետությունը պատրաստ լինի դիմավորելու ամեն մի անակնկալություն և ամեն մի պատահականություն։ Ա՛յս ուղղությամբ պետք է աշխատեն մեր բոլոր հասարակական կազմակերպությունները, գրականությունը, արվեստը, կինոն և այլն։ Այդ էլ, ընկերներ, կլինի պարտիայի կամքի, ընկեր Ստալինի ցուցումների և Լենինի պատգամների իսկական կատարումը, մասսաների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ պատմական տվյալ ժամանակաշրջանում* (Բուռն ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում)։

---

